ԲԱՐՍԵՂ Ն. ԷՔՄԷՔՃԵԱՆ

# ՇԻՆԵՄՔ
# ՄԵՐ ԳԵՐԵԶՄԱՆԱՏՈՒՆԸ
## ԿԱՄ
# ԳԵՐԵԶՄԱՆՔ

ԱՄԵՆ ՀԱՅ ԱՆՀԱՏԻ ԸՆԹԵՐՑԱՆՈՒԹԵԱՆ ԱՐԺԱՆԻ
ՏԵՏՐ ՄԻ

«Հոգւոց վախճանելոցն իրաւունք սուրբ լինիցին:»
*Օրէնք ԺԲ. տախտակացն*

معارف نظارت جليله سنك ٥٤٩ نومرولى رخصتنامه سيله طبع اولنمشدر



Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Յ. ԳԱՎԱՖԵԱՆ
18

## Սիրելի Մայր

Քո մայրենի խնամոցդ, քո իմ այտիցս վերայ հեղած արտասուացդ փոխան, քե՛զ, քո յիշատակին նուիրեմ սոյն գրիչն, զոր «սրտայոյզ» եւ «ազդու» կոչեց Արեւելք։

Բայց ես չեմ կարծեր թէ այնքան ազդու և սրտայոյզ լինի այն, որքան քո արտասուքն և եղերերգ իմ հիւանդութեան անկողնոյն քով, որքան քո ձայնն ու երգ իմ մանկական օրրանին քով։

Ոմանք քար կը նուիրեն իւրեանց մօր, ես իմ գրիչս նուիրեցի քեզ. ոմանք կ'ուզեն միայնութեան մէջ յիշատակ կանգնել իւրեանց մօր, ես սրտերու մէջ ուզեցի կանգնել քեզ յիշատակ։

Երախտապարտ,

Որդիդ սիրամոլ

Բարսեղ Ե. Էքսէրճեան

1885, Օգոստոս 1
Իւսկիւտար




# ՄԱՀԱՐՁԱՆ

## Ի ՅԻՇԱՏԱԿ

## ԽԱՆԴԱԿԱԹ ՄՕՐՆ ԻՒՐՈՑ

## ՀԱՄԵՍՏՈՒՀԻ

# Մ. ԵՐԱՆՈՒՀԻ Ե. ԷՔՍԷՐՃԵԱՆ

ՈՐ

ՀԱՆԳԵԱՒ Ի ՏԷՐ Ի 1878 ՅՈՒԼԻՍ 10

## ԿԱՆԳՆԷ

ՈՐԴԻՆ ԻՒՐ

Բարսեղ Ե. Էքսէրճեան

ՅԻՆԻՐՔ

# ՄԵՐ ԳԵՐԵԶՄԱՆԱՏՈՒՆԸ

ԿԱՄ

# ԳԵՐԵԶՄԱՆՔ

## Ա.

*Մայրն . . . —Մինչ աչքերդ տեսան լոյսն կենսաւէտ, զի՞նչ կարէիր առնել: — Ծծել լոկ, խնդրել զոր ինչ չէիր զգար յայնժամ: — Ո՞վ էր այն որ գիտէր քո բաղձանքներն, ո՞վ, որ որրանիդ առընթեր կեցած՝ կուլար, երբ դու հիւանդ էիր, կուրախանար, երբ դու զուարթ էիր, կը մոռնար իւր վշտերն ու հոգեր, երբ քու այտիցդ վերայ կը նշմարէր անգիտակից ժպիտներ, որ մանկական դիմաց վրայ աւելի հրապուրելի են քան պատանեկինն և համեմատաբար աւելի սիրուն են պատանեկինն քան երիտասարդինն և աւելի խորհրդաւոր ծերունւոյնն քան նոցայն մայրականն քան մանկականն: Հրապուրելի է, այո, մանկան ժպիտն և խո՞րհրդաւոր մօրկանն:*

*Մանուկն, որ կ՚աճէր տակաւ որրանին մէջ իւր մօր արտասուած չիթով ոռոգեալ՝ ծիծղուն ժպտով ուռճացած մանուկն կը սեւեռէր աչերն ՚ի մայրն, հոն կը սիրէր ճանաչել նախ իւր առաջին դասն, առաջին բառն, որ և լինելոց*

էր վերջին դասն ու բառն, կը դիտէր նորա աչերն, նորա դէմքն մելամաղձիկ, նորա խնամքն, նորա ցաւերն՝ նորա սէրն․ կը դիտէր, այո՛, այնպէս, ինչպէս ապուշ մի՛ առարկայն կը դիտէ։ Կը տեսնեմ զնա, որ կ՚սկսի խօսիլ և առաջին բառն կը թռչի բերնէն «Մա՛յր»։

Մա՛յր, մա՛յր կը գոչէ այդ մանուկն տակաւ․ նոյնն կը լսես, երբ ներելի լինի նմա քայլել։ Ուրախութեան մէջ, խաղուց մէջ, հիւանդութեան ու տխրութեան մէջ կը գոչէ «մա՛յր»։

Մայրն ու մայրիկն լսելի կը լինի նորա շրթնէն մինչեւ բարեբաղդ գտանի ծերացեալ մտանել 'ի գերեզման։

Այնքան վսեմ ու խորհրդաւոր է որդւոյն կոչելն «Մա՛յր, մա՛յր», որքան վսեմ ու խորհրդաւոր է Աստուածորդւոյն կոչելն «Էլի՛, Էլի՛», զոր կը կոչէր արտասուագին իւր մահամերձ նեղութեան մէջ՝ Գողգոթային վերայ, չարչարանաց լերին վրայ, Բեթելի բլրին վրայ, բազկատարած անյա՛ղթ խաչին վրայ։

Ուրեմն մանուկն, որ տակաւին ոչինչ գիտէ այդ վիճակին մէջ, սակայն գիտէ գէթ բառ մի վերին զօրութեամբ, կ՚զգայ, այո՛, բառ մի՝ ամենաբարձր առաքինութիւններէն մին, զոր գիտակցութեամբ չ՚գիտէին հսկայ գլուխներ, այց երկինքէն տուաւ զայն ուսուցանող գիրքն՝ տախտակներն և նոցա վարժապետ՝ յերկնուստ ղըրկուեցաւ Մովսէս։ Մարդն ուսաւ յայնժամ այնպարագն, այն դասն գիտակցաբար, զոր մանուկն գիտէր արդէն անգիտակցաբար։ Ի՞նչ էր

այդ պարտքն կամ այդ դաս. «Սիրէ՛ ու պատուէ՛ հայրդ ու մայրդ»։ Կը սիրէր ապաքէն մանուկն զիւր մայր, մինչ զի չէր ուզեր բաժանիլ յիւրմէ ; Ներքին ձայն մի կար իւր մէջ՝ ազդարարող այն պատգամն թէ՝ «Սիրէ՛ ու պատուէ՛ մայրդ»։

Ուրեմն զոր ինչ կը սիրէր մանուկն իւր մանկական հասակին մէջ անգիտակցաբար, մեք, հարք և մարք, և մեք փութամք սիրել մեր հայրերն ու մայրեր, թէպէտեւ գերեզմանին մէջ ալ եղած ըլլան, սիրեմք ու պատուեմք զանոնք. Նոցա կայքն. Նոցա յիշատակն մեր հասուն հասակին մէջ։ Ջեմ կարծեր որ մեք՝ խոհուն ու կատարեալ մարդեր գոլով, պիտի փափաքիմք տղայ լինիլ, իբրեւ տղայ զգալու այն աստուածատուր պատուիրանն, և սիրելու այն քաղցր պարտականութիւնն գէթ այնչափ, որչափ չեմք թուիր սիրել։

Արդար է յոյժ թէ ամէն զաւակ չ'կարենար արժանաւոր զաւակ լինիլ, բայց ամէն արժանաւոր զաւակ կարէ իւր նախնեաց պատիւ բերող արժանաւոր զաւակն լինիլ։ Ջանամք, որպէս զի մեր նախնեաց արժանաւոր զաւակներն կոչուիմք։

Բայց առ ի՞նչ այդքան սէր, այդքան յարգանք առ ծնողս, պա՞րտ է մեզ զայդ առնել անվրէպ, ո՞վ է դրած մեր վրայ այդ պարտքն, և ի՞նչ իրաւամբ։

Դիտած եմք թէ մանուկն մօր ուշն և զուրուշ գրաւած, նորա վիշտերն ու մորմոք առելցուցած, անկէ ապրուստն և հագուստն վայելած, նորա կեանքն համակ վտանգեալ տագնապեցուցած է, երբ հագիւ է հնգամեայ։

Հնդամեայ է մանուկն ։ Մայրն չուզեր որ տան մէջ մնայ անգործ ու անաշխատ, այլ աշխատել․ միշտ աշխատիլ ու այսու կը փափաքի նորա սնընդեան հացին հետ բաշխել և մնայց հացն ։

Այլ աղքատ է, չունի բաւական միջոցներ իւր ընտանիքն սնուցանելու ։ Բայց տեսնեմք, ի՞նչ կը խորհի նա ։ Իւր ցերեկեայ աշխատութիւններն բաւական չ'համարիր իւր զաւակն վարժարանի մէջ կրթել տալու համար․ երբ արեւն դառնայ 'ի մայրն և լոյսն տեղի տայ, կը վառէ հողակերտ ու աննշան կանթեղն, թէպէտ պակասի հոն բաւական իւղ, ինքն ընդառաջ այդ աղօտ ճրագին, կը խառնէ արտասուքն՝ քրտան հետ, հառաչն՝ խնդին հետ, յոյսն՝ ճգան հետ․ վարձքն՝ ապագային հետ ։ Կանթեղն կը պլպլայ խոր խաւարին սենեկին մէջ․ ինչպէս աստղիկն աղօտափայլ՝ երկնից մթին ու անհուն կամարին վրայ ։ Ասեղն իւր հաց հայթայթելու գործիքն՝ առաւել խոնջեալ կը թուի քան զինքն, այլ միշտ հնազանդ՝ խեղճ ու տառապեալ մօր, կ'երթեւեկէ անոր տկար մատանց ներքեւ, կը կարէ շապիկներ, կը կարէ շրջազգեստներ և այլն ։ Ո՞վ ընդ քեզ հսկէ, ընդ քեզ գթայ, մա՛յրդ ցաւագին․ ոչ ոք, միայն յերկնից՝ Աստուած․ ամէն ոք կը ննջէ լռիկ, ամէն ոք կը ննջէ յուշիկ ու խաղաղիկ, միայն դու, թշուա՛ռ մայր, դո՛ւ միայն․ աւա՜ղ, տառապեալ քրտնավաստակ ։ Մայրն կը տքնի, կը քրտնի, կը տառապի, կը կարէ․ առ ի՞նչ այսքան փոյթ, այսքան տանջանք․ դոյզն ինչ գումար աւելի շահե-

լու համար, որպէս զի կարենայ կրթել իւր զաւակն, զաւա՛կն, զոր այնքան տառապանօք ու գգուանօք էր սնուցած։

Մայրն յաջողած է ժամանել իւր փափաքանաց, մանուկն ընդ անթով ունի մի գիրք սիրուն, և կը յանձնէ վարժարան, սկսած է նա թոթովել Ա, Բ, Գն։ Կը հրճուի մայրն յոյժ, երբ կը տեսնէ թէ զաւակն օր ըստ օրէ կ'ուսանի բառեր, կ'ուսանի նոր և հիմնական դասեր, թէ՝ նա առաքինութեան պարտքերն սրտի մտօք ճանաչելու է հասեր, իւր աշխատութիւնքն, որ այնքան ծանր կ'երևէին յառաջ, կ'սկսին թեթևնալ թուիլ։ Տարիներ կը հոլովին, տարիներ կը կքեն մօր քամակն՝ այն կայտառ ու կորովի մայրն կը ծերանայ, կը տկարանան սրունքներն, բայց այժմ մանուկն այլ ևս չէ մանուկ, այլ ամէն մոլութենէ զերծ, ամէն մոլորութենէ ազատ, կորովի, կրթեալ, բանիմաց, առաքինի ու պարկեշտ երիտասարդ մ'է, այլ ևս մայրն ցերեկն՝ չունի իւր առաջ կարի սակառ, գիշերն՝ կանթեղ իւղապատ, միայն մանուկն է՝ այժմ պատանի, որ կը սնուցանէ, կը փառաւորէ, կուրախացունէ զմայրն. մայրն յաղթական մը եղաւ։

Այլ, աւա՜ղ, որչա՜փ սուղ գնեց այդ յաղթութիւն, այդ ուրախութիւն իւր մէջ կը պարունակէր դառնութիւններ, դառնութի՜ւն, որ կը ցամքեցնէր արտասուքն աչաց մէջ և արտասուաց տեղ արիւն կը կորզէր սրտէն. ո՜հ. ահա՜ յաղթութիւնն մօր, եթէ երբէք մարթ է կոչել յաղթութիւն։

Այլ Թողունք զայս կէտ Աստուծոյ տնօրէնութեան՝ չընենք այն գերմարդկային գաղափարաց աշխարհներուն մէջ. այլ դեգերինք ևեթ հոն, ուր մարդկային մտացն ներելի է թափառիլ:

Նախախնամութիւնն մերթ արկածներ կը ղրկէ անմեղ ու խոնարհ հիւղին դուռն իսկ, ուր սոսկ աղօթք, բարիք, առաքինութիւն, ժրաջանութիւն կը բնակին 'ի միասին, այդ արկածիցըն մի դժնդակ հարուածն ահա՛ կուգայ բաղխել այդ՞ տառապագին մօր անակին դուռն; մի խռովեցուցիչ բուք, մի մշուշ կորստաբեր կուգայ ծածկել այդ ընտանեկան տամալին, մի մահացու հիւանդութիւն կը գամէ այդ արթուն ու զուարթուն նեցուկն, այդ քաջարի ու բարի երիտասարդն, այդ ներհուն ու պարկեշտասուն զաւակն: կը վերանորոգին մօր վշտերն, տառապանքն ու զմբաղք, կասկածանքն ու ծախք կ'աւելնան. ինչ ընել պէտք է մահուան ճիրաններէն ազատելու համար իւր զաւակն, յԱստուած ապաստանել ու դարման տանիլ. ահ, ինչ աղէտք, ինչ ճգնաժամ, ինչ հառաչ, վահ: Աստուած ապաստանի՞լ. այդ իւր ընդոծին բարեպաշտութիւնն էր, իսկ դարման տանի՞լ. այո, և քաջավարժ էր և այդմ, այլ իբր բժիշկ դարմանե՞լ, այդմ չէր ատակ, պէտք էր դրամ, հընչիւն արծաթ պէտք էր դեղորայք հայթայթելու և բժշկի խնամոց տակ դնելու զայն, ինչ կրնար ընել այսպիսի վտանգաւոր և անձուկ ժամանակի մը մէջ: Տեսէք թէ ինչպէս կը գործէ մայրն. Նա վայրիկ մի կը մոռանայ իւր ցաւերն, կը

դօտեայնդի , կը բորբոքի սիրտն արիութեամբ , յուսահատութիւնն տեղի կուտայ յիւրմէ , կ՚զգե-
նու մի նոր զօրութիւն , կը խորհի այնպէս, որպէս չէր կարող յառաջ խորհիլ , կը վազէ տաճարն , կը ծնրադրէ , կաղօթէ իւր որդւոյն համար · իւր շրթունքներն կարտաբերէն կարեկցելի խօսքեր , որ 'ի գութ և 'ի գորով կ՚ածեն զսիրտս լսողաց , Աստուած կը լսէ մօր աղօթքն և ահա մի օգ-
նութեան ձեռն կը կարկառի , մի բժիշկ մարդա-
սէր կը փութայ իւրովսանն խնամել հիւանդ զա-
ւակն · մայրը կը սրանայ , կը սլանայ երբեւ թըռ-
չուն յուպէտ և յուկամ, կ՚երթայ , որչափ հեռուն երթալ պէտք լինի , այլ կասկածոտ է և անհան-
գիստ , կ՚ուզէ իւր հիւանդ ու դժբաղդ որդւոյն անկողնոյն մօտ հսկել միշտ , 'երբ նորա պահա-
պան հրեշտակն , նորա , որ աչերն փակուած են ոչ առ յաւէտ , որ դիմաց վրայ հիւանդու-
թեան յատկանիշն է դրոշմուած և նշմարուած մահուան աղետալի պատկերն , որ ձեռքերը , մարմինը չեն այլ ինչ բայց եթէ կմախք մի ա-
հարեկ · նա չդանդաղեր , կը փութացնէ քայ-
լերն և քիչ մը յետոյ կը տեսնես դու զայն ի հե-
ռուստ , որ ընչասպառ ու խոնջ՝ կուգայ · աչաց մէջ յուսահատութեան արտօսր ունի , ճակտին ու այտերն վրայ քրտանց կայլակներ · Ինչ կը բե-
րէր մայրն ի հեռուստ , ա՛հ , անշուշտ մի կարե-
ւոր դեղ , զոր միայն հո՛ն՝ հեռուն մարթ էր գտանել ։ Հասած է մայրն և նստած իւր սիրելի որդւոյն անկողնոյն քով , իւր միակ որդւոյն ընչոյն մօտ , կ՚սպասէ որ որդին իւր աչերը բանայ և

զինքը դիտէ · կը բանայ նա աչերն և կը դիտէ , այո՛ , զմայրն այնպէս , որպէս կը դիտէր , երբ դեռ մանուկ էր և յօրրանի և մայրն՝ իւր առընթեր ։ Յայնժամ կ'երգէր մայրն ու կը զուարճանայր , կը ժպտէր մանուկն ու կը խաղար , այժմ կը տխրի , կը ցաւի , կը հեծէ , կը հիւծի · ա՜հ , և նուա՛յ իսկ մայրն , մա՛յրը կուլայ որդւոյն առաջ , զի կը կարծէ թէ այլ եւս չպիտի կարէ վայելել, տեսնել իւր որդին , իսկ ծիծղուն որդին այլ եւս չ'ծիծաղիր , իւր այտին վրայ փթթած քաղցրիկ ժպիտներն փտտած , թառամած ու թարշամած են , իւր սրտին մէջ խոցեր , վշտեր ունի , իւր դիմաց վրայ յուսահատութիւն ։

Կը հիւծի , ըսի , երիտասարդն , այդ հիւծման կ'ընկերանայ և զառանցանքն , իւր առաջ բացուած գերեզման կը տեսնէ , հոն սպիտակազգեստ հրեշտակ մի կ'երեւի նմա , հօս մեռելաթաղ մի կարծրասիրտ և վիթխարի , և կ'ըսէ · «Ա՛հ , մա՛յր , զիս թող մի՛ տար , զիս բռնէ , զիս կը տանի՛ն . . . » ։ Կ'արտասուէ մայրն՝ երեսն ձեռաց մէջ ծածկած , զի արցունքն չ'հոսի այտերէն , այլ կաթէ սրտին մէջ ։

« Զիս կը տանի՛ն . . . » կը կրկնէ · այս աղեկէզ ձայնին կը յաջորդէ · « Ո՛հ , ես պիտի մեռնի՛մ , ա՛յլ պիտի մեռնի՛մ ես , կը մեռնի՛մ · . . . » և կը դրէ մի վերջին տաղ « Պիտի մեռնիմ ես » (1) ։

Մերթ կը տեսնես դու մայրն ինկած՝ որդ-

---

(1) Երջանկայիշատակ Գ. Դուրեանի անտիպ գործոց մէջ կայ «Պիտի մեռնիմ ես» վերնագրով խիստ սրտայոյզ մի տաղ ։

ւոյն ճակտին վրայ, երբ նա կը ննջէ հիւանդութեան անկողնոյն մէջ, ստէպ կը համբուրէ այն խոնջ ճակատն, կը թանայ նորա այտերն դառն արտասուօք: Ահա մայրական սիրոյ վսեմութիւն, ահա նահատակութիւնն մայրենի. ո՞ր աղիք չ'գալարիր, ո՞ր սիրտ չ'դղրդիր, ո՞ր զգացում չ'յուզուիր, և ո՞ր աչք կը ժուժէ արտասուաց, երբ կը տեսնէ թէ մայրն՝ անզգայ, նուաղեալ ինկած է մահամերձ որդւոյն անկողնոյն քով:

Արթնցիր քունէդ, գերեզմանէն դուրս թռի՛ր, ո՜վ մատաղատի Քերթող, դո՛ւ ալ ունեցար այդ արտասուող մայրն, ե՛կ զգացո՛ւ մեզ մայրենի գորովոյ վսեմութիւնն, այն էակին պարտքերն ճանչցո՛ւ մեզ. կրկնէ՛ սրտայոյզ չեշտերն քո այն տաղին, զոր գրեցիր մահամերձ օրերուդ մէջ. մտի՛կ ըրէ՛ք, Պետրոս Դուրեան կը խօսի մեզ իւր շիրմէն.

Երէկ երբ պաղ քրտանց մէջ
Ցուրտ մրափ մը կ'առնէի,
Զոյգ մը վարդից ելեւէջ
Այտերուս վրայ այրէի,
Վերայ ճակտիս իմ մահու
Դալկութիւն մը պըլլալար,
Վերայ հոգւոյս սիրարկու,
Անկա՛ւ շունչ մօրս, որ կուլար...
Բացի աչերըս խոնջած,
Գըթոյն արտօսրը տեսի՜...
Համբոյրն յերեսս հանգչած
Սուրբ յիշատակ մի վերջի....:
Ցոր մայրս անհո՛ւն ցաւ մ'ունէր,

Այն սեւ ցաւը ես էի . . .
Ա՜հ , գըլուխըս փոթորկեց . . .
Այս սեւ հեղեղն դուրս տըւի . . .
Ո՜հ , ներէ ինձ , Աստուած իմ ,
Մօրըս արտօսրը տեսի . . . . ։

Այսպէս միշտ սէր տածած են ամէն զգայուն որդիք առ իւրեանց մարս , այսպէս և ողբացած է հայ Սթաէլն՝ Տ· Սրբուհի Տիւսաբ իւր սիրելի և անզուգական մայրն , և գրիչն արտասուաց մէջ թաթխելով գրած է իւր Յուշքն , զոր հրատարակեց Մասիս (Տես 1884 հոկ· 27 , թիւ 3741) ։ Ի՜նչ սրտի զգացմամբ և ցաւօք կ'սկսի նա իւր Յուշքն և ինչպիսի տխուր տպաւորութեամբ կը համակէ մեր ուշքն ։

« Մինչ մանկիկ էի · կը գրէ , մայրս մեռաւ , որբ մնացի , սակայն որբութիւն չ'ճանաչեցի , այնչափ մայրս բոլորովին սէր էր և անձնուիրութիւն ։ Նա երկու զաւակացը համար կ'ապրէր · զի ոչ հաճոյք և ոչ բաղձանք ունէր իւր անձին համար ։ Մեր ուրախութեան , տխրութեան կամ ըղձից արձագանգ կուտար ։ Նուրբ թել մ'էր որ որդւոցն ցնցմամբ ուժգին ձայն կուտար ։ Ի՜նչ զոհեր չ'կատարեց մեզ համար և սակայն բնաւ ակնարկութիւն չըրաւ բոլոր կենացը մէջ իւր անձնուրաց գործոցը ։ Նա մատուցած ծառայութեանցն նկատմամբ յիշողութիւն չ'ունէր · պարգեւածը կը մոռնար ընդունածը յիշելու համար միայն . . . . . ։

Տարիներ անցան , ժամանակը քայլեց · ես եւս մայր եղայ և սակայն անձս տղայ կը կար-

ծէի երբ մերձ էի մօրս · այնքան գորովով կը շրջապատէր զիս . . . . . ո՜հ, ապագայն կը լռէր, բայց կը պատրաստէր ինձ այն սոսկալի հարուածն, որ զէութիւնս համայն դղրդեց . . . . . . Մայրս մահուան անկողնոյն վրայ տարածուած էր սեւ զգեստներովը ։ Ձեռքերը կուրծքին վրայ դրուած՝ խաչիւ կնքուած էին ։ Անհնարին ցաւով մերձեցայ անկողնոյն · ծունր դրի անոր մօտ և մօրս ձեռքերն համբուրեցի · ո՜հ, մահուան ցուրտը գրաւած էր զանոնք ։ Առատ ծաղիկներով համայն զգեստը ու գլուխը զարդարեցի · կարծես կը ննջէր Առաքինին · այնքան հանդարտ էր իւր դէմքն » ։

Վշտահար և մահամերձ երիտասարդն մօր խնամոց տակ կ'ապաքինի տակաւ և կ'սկսի քայլափոխել դեռաբոյս մանկան մի հանգոյն · կը համրէ տասն օրեր, և ահա՛ կրկին ու զօրաւոր հարուած մ'ալ · կը տեսնէ որ այն հոգերն, զոր մայրն իւրեան համար ունեցած էր, կը գամեն զնա · խե՜ղճ մայր, նոյն անկողնոյն, ուրկէ դեռ նոր էր ելած որդին, մայրն որդւոյն կը յաջորդէ, և գուցէ իւր որդւոյն փրկութեան զոհ երթայ մա՛յրն ։ Աստուա՛ծ, դո՛ւ պահանջեցիր այդ զոհն, որ այնչափ պիտանի ու քաղցր էր որդւոյն համար, այլ միթէ դու չէ՞իր որ պահանջեցիր Իսահակն Աբրահամէն · հօն Աբրահամ, ծերունազարդ նահապետն դեռափթիթ զաւակն կուտար զոհ, հոս դեռափթիթ զաւակն իւր ծերունազարդ մայրն · ի՜նչ խորհուրդ անքնին, ո՜վ Աստուած ։ Մայրն փրկուած կը

տեսնէ զիւր զաւակ մահուանէ, այլ զաւակն դագաղին մէջ կը տեսնէ իւր մայրն. ահա կեանքն :

Օրեր կ'անցնին, հիւանդ պատանին, որ ուսած էր սիրել ու պատուել մայրն, փութաց այդ սիրոյ ու յարգանաց գէթ մի վերջին փորձն ալ տալու, հիւանդ էր և չպիտի կարենար հըսկել, դարման տանիլ իւր մօր, զի վիշտը պիտի ընկճէր իւր տակաւին փափուկ ու նրբին թելերը խղճին, արիութիւն պէտք էր. ահա սքանչելեաց ժամն. հիւանդ ու տկար երիտասարդը կ'զգենու այն տարօրինակ զօրութիւնն, զոր զգեցաւ մայրն, երբ հիւանդ էր ինք. կը տանի ամեն խնամք, այլ Երկինք վճռած է բառնալ յիւրմէ մայրն : Մայրն իւր վերջին օրհնութիւններն ու ողջոյնը կը մատուցանէր տղոյն, որ անմխիթար կը գտնէր զինքն իւր ցաւոց ու այս կորստեան մէջ. մայրը Ս. Թագաւորի օգնութեան ու խնամոցը կը յանձնէր զաւակն և կը փակէր աչերն, ինչպէս մանկիկը կը փակէ աչերը՝ մօր երգերէն ներշնչեալ : Մայրն ոչ եւս էր :

Մա՛հն, ա՛հ, մահն անգութ է, մահն անողորմելի առաջնորդած է մօրն և տարած մինչեւ այն դուռն, զոր բախել ճակատագիրն է ամեն մահկանացուի : Այդ ճիւաղն անարգել կը թռչի յերկրէ յերկիր, ծովէ ի ծով, ամեն ուրեք ողբ կը ցանէ, ամեն ուրեք դող կը ցանէ, ամեն ուրեք սուգ կը ցանէ :

Թաղեցին մայրը ցուրտ գերեզմանի մը մէջ և որդին թրջեց նորա հողն իւր արտասուքով, որ

ապրելէն շատ քիչ էր մնացած իւր աչացն մէջ ։ Ազբե՞լ, ա՛հ, որդւոյն համար չէր կարծեր, նա չէր ուզեր դիտել երկնից կամարն այն, զոր իւր մայրն այլ եւս չէր տեսներ ։ Երբ տեսնել ուզես զինքն՝ յորդ արտասուաց մէջ կը գտնես, զի ոչ եւս է իւր յոյսն, սէրն, ոգին, կեանքն՝ մայրն ։ Նա գերեզմանն է այժմ․ այն գերեզմանն, որ երկնից դուռն է, անմահութեան դուռն է, աշխարհի դուռն է, ճշմարտութեան դուռն է, Աստուծոյ դուռն է ։

Ահա թէ ինչու համար պէտք է սիրել և յարգել մեր մայրն, ահա թէ ո՞վ դրած է մեր վրայ այդ պարտքն, և թէ ինչ իրաւամբ ։

'Ի Հողէն 'ի մօր ո՛ւր դու փնտրես ։

Դու չ'պիտի՞ ուզես ուրեմն, ո՛վ որդի մայրակորոյս, սիրել ու պատուել մայրդ, որ այդ տառապանքներն կրած է, թերևս և աւելին, չ'պիտի՞ ուզես պատուել նորա շիրիմն, որ քո մայրական սիրոյն ապացոյցն ու յիշատակն պիտի լինի․ վստահութիւն մեծ ունիմ թէ բացասական չ'պիտի կարենաս պատասխանել ։

Այն գերեզմանատուն, ուր ամէն ոք ունի մի հայր, մայր, քոյր, եղբայր․ կին և որ 'ի կարգին, ունի, այո՛, հօն անվրիպելի պարտք մի կատարելոյ, ունի յիշել թէ պէտք է հոգալ, պահել, պահպանել նոցա կայքն՝ մեռելոց հայրենիքն, ինչպէս պարտաւոր է իրեն կայքն, այնց իրաւունք, մեզ պարտք, զի «Ողւոց վախճանելոցն իրաւունք սուրբ լինիցին» ։

Այո՛, կը փափաքի հայ զաւակն կատարել իւր

այդ պարտքն, կը ճանչնայ զայն, բայց ո՛րպիսեաւ, զի՛նչ, ո՛ւր, ե՛րբ։

## Բ.

Ըսինք թէ մանուկն իւր որրանին մէջէն իսկ կ'սկսի սէր տածել առ մայրն, այդ սիրոյ ճիւղերն ծլարձակ բազմանան իւր հասակին հետ՝ որ կը բողբոջէ զերդ մատաղ տունկ։ Մայրենի սէրն գերեզմանէն անդին իսկ չ'ցնդիր իբր շոգի, աշխարհի ամենասոսկալի և վիթխարի պատուհասն իսկ չ'կարենար արմատախիլ հանել նորա արմատն սրտերէն, այն արմատն սիրոյ, զոր տնկած է Աստուած 'ի բնուստ, և մայրն բարգաւաճեցուցած է։

Փրկիչն ուսոյց մեզ հաւատք, յոյս և սէր։ Մարդ հաւատքով կ'անմահանայ, յոյսով կ'ապրի, սիրով կ'երջանկանայ. հաւատքն, այո, զմեզ կաշկանդած՝ չ'թողուր 'ի սպառ գերեզմանին մէջ. զի «Որ հաւատայ 'ի Նա թէպէտ և մեռանի, կեցցէ». այս հաւատքն մի բարձր և երկնային մխիթարութիւն է քրիստոնէին համար։ Քրիստոնեայն կը հաւատայ թէ իւր կեանքն հոս չ'վերջանար, զի գիտէ քաջ թէ այն, որուն վրայ կը քալէ, չէ այլ ինչ բայց եթէ իւր գոյութեան մի տարրն, և այն, որ կը տանին հանգչեցնել գերեզմանին մէջ, պիտի դառնայ նոյն տարրն, հողն, հո՛ղն, որով Աստուած ստեղծ զմարդ, մարդն, որով Աստուած խոստացաւ լնուլ զաշխարհ, աշխարհ, որ այնքան խաբուսիկ է և ու-

նայն·, է զի նովաւ պանծայ, հպարտանայ, ամբարտաւանի մարդն, առանց իմանալու թէ ինքն և նա են հող․ սակայն կը քստմնի մարմինն ամբարտաւանին, երբ մտածէ միանգամ թէ ինչ պիտի լինի այն հողն, յորմէ կազմուած է ինք․ կը սարսափի, այո՛, երբ մտածէ թէ այն մարմինն գերեզմանին մէջ չ'պիտի մնայ յաւիտեան, այլ պիտի միանայ հողոյն, հողեկան պիտի լինի, և պիտի յառնէ գերեզմանէն ։

Գաղիա այսօր փակած է, այո՛, տեղւոյն աստուածաբանական վարժարաններն, չ'ընձեռեր նա այսօր կրօնականներուն, մերժած է իւր սրտէն կրօնքն, այլ այսպիսի աւաղելի պարագայի մէջ իսկ կրօնքն բոլորովին չ'յաղթահարիր, նոյն իսկ 'ի Գաղիա, կրօնի ազատ երկրին մէջ կը յառնէ Գառօ՝ հոգեպաշտ իմաստասէրն, թերահաւատներու և անհաւատներու բազմութիւնն ճեղքելով բեմն կ'ելնէ և կը քարոզէ զԱստուած և զանմահութիւնն հոգւոյ, կը ձաղկէ հոյակապ անհաւատ և թերեհաւատ իմաստասիրաց լէգէոնն ։ Ո՛վ սուրբ կրօն, այդպիսի մոլեկան ժողովրդեան, զքեզ մերժող սրտերու մէջ իսկ կը թափանցես, կը ցօղես քո վարդապետութեան շաղերն, կը ցոլացնես քո ճշմարտութեան շողերն ։

Ա՛հ, ցաւո՜ց օրեր․ երբ իմ մայրս դրին դագաղին մէջ — գիտես դու, ո՛վ գորովագութ մայր, որքան առաւել քան զիմ անձն սիրէի զքեզ — և հանգչեցուցին գերեզմանին մօտ, կեցայ տխուր՝ ու յիշատակներով պաշարեալ իւր

դագաղին առաջն, որպէս կը կենայ տխուր հայր մի իւր արեացաւեր տան սեմին առաջն, կամ հնախոյզ մի աւերակ քաղաքի մը բեկորներուն առաջ, դիտեցի այն փափկախօս շրթունքն կիսաբաց, որ կը զեղուին զիս բարոյական խրատներով և յորդորներով, դիտեցի այն մատունքն անշարժ, որ ծակծկած էին ասեղի հարուածներով, այն մատունքն, որ ինձ հաց ու կրթութիւն ջամբելու կը ծառայէին, աչքերս, որ կարմրացած էին արտասուօք, յառեցի նորա գոց աչերուն, միտքս երկնից կայանին, հոս իմանալին դիտեցի աչօքս, հոն անիմանալին մտօքս և աղօթք, զոր ուսած էի մօրմէս, սկսայ մրմնջել նորա հոգւոյն համար։

Ո՜հ, այն ատեն աչացս մէջ բաւական արտօսր չէր գտնուեր քամելու համար նորա ցուրտ մարմնոյն վերայ, շրթանցս վրայ բաւական համբոյր նորա սառն ճակտին ու ձեռացն և խաչին վերայ դրօշմելու, զի կարենամ այսու արտայայտել սէրս, բայց այդ ցաւոց ու սիրոյ կրակն չէ արծարծուն այժմ, թէպէտ ոչ բոլորովին մարած. ա՛հա ա՛յսքան սիրոյ, ա՛յսքան անտարբերութիւն իւր գերեզմանին, ի՜նչ հակասական զգացումներ, բայց ո՞ւր է մեղ, որդւո՞յն միթէ.... այլ գործունէութիւն ու նուիրական տեղւոյն պարտաճանաչութիւնն յաղթեց ժամանակին։

Իջեցուցին մօրս մարմինն խոր փոսի մը մէջ, քահանայն կնքեց զայն, ծածկեցին մեռելաթաղք և տարիներ զայն դարձուցին 'ի հող. այդ-

հողն, փոսն մեր սիրելեաց աւանդապահն է, և այդ աւանդապահներ շատ են, որ ամփոփուած են շրջապատի մը մէջ, զոր կը կոչեմք ԳԵՐԵԶՄԱՆԱՏՈՒՆ։

Աչքերս չ'դադրեցան արտասուելէ, ձեռքերս չ'խոնջեցան աղօթելէ, ծնկներս չ'թմրեցան ծնրադրելէ, շրթունքս չ'կասեցան մրմնջելէ քո անունդ. եկի յայց քո գերեզմանին, եկի թացի քո հողն սեաւ։ Եւ դու, ո՛վ հայ պատանի, միթէ և դու չ'ուղղեցիր քայլերդ 'ի գերեզման, ողբալու համար մայրդ, երբ մեռաւ, երբ թաղեցին, երբ երկինք անձրեւ ցօղեցին վրան. դո՛ւ, հա՛յ աղջիկ, չ'խառնեցի՞ր քո արտօսրն երկնից՝ բնութեան արտասուաց հետ և չ'թափեցի՞ր ննջող մօրդ շիրմին վրայ։ «Ամիս մ'անցաւ, կ'ըսէ Տիկին Տիւսաք, Մա՛յր, և ես չ'այցելեցի տակաւին քո սուրբ գերեզմանին, գուցէ քո թաղծեալ ոգիդ հարցնէ անձկանօք»։ ընդէ՞ր դուստրս կը յապաղէ իւր արտասուօք իմ ցուրտ հողս ջերմացնելու. մոռցա՞ւ զիս արդեօք —։ Հանգիստ եղի՛ր մայր իմ, պատկերդ պաշտելի կանգնած է յաւէտ հոգւոյս պատուանդանին վերայ։ Բայց այնչափ լացի, այնչափ տառապեցայ, որ անկարող եմ արդ երթալ մինչեւ 'ի Վոժիրը, ուր դու կը հանգչիս մերձ քո սիրելի կենակցիդ....։ Եւ սակայն ամէն ճիգն կը թափեմ զօրանալու համար, որպէս զի կարողանամ ժամ յառաջ առ նոր տխուր կայանդ ընթանալու, և հո՛ն....։ Մտայ Եկեղեցւոյն դըռնէն, վեր ելայ սանդուղներէն և առանձնացեալ

դարատափի վերայ , և յանկարծ , ով Աստուած իմ, տեսութեանս ներկայացաւ ։

Անկայ , մայր , տապանիդ վրայ , և փարեցայ զհողովդ , սիրտս՝ կարօտ քո տեսոյդ , յուսահատօրէն տենչայ զքեզ ։ Բայց մահն՝ անողոք թըշնամիս , իրեն յափկացուց բոլոր կոծերս , բոլոր արտասուքս , բոլոր յուսահատութիւնս, և ոչ կարեկցութեան չշունչ մի ելաւ գերեզմանիդ մէջէն ։ Քառասուն և վեց օրերէ ի վեր յուսացի , զի հեքս կը կարծէի սփոփիլ, մխիթարուիլ սուրբ հողդ համբուրելով ։ Բայց որչափ մեծ ակնկալութեամբ եկայ , նոյնչափ սդահար , նոյնչափ ողորմելի մեկնեցայ քեզմէ , մայր , հոգւոյս վէրքն աւելի բացուեցաւ , արիւնեցաւ , քանի որ շատ իսկ համոզուեցայ թէ ոչ ուրեք կայ ինձ մխիթարութիւն , զի աչերս ոչ ուրեք կը տեսնեն զքեզ , ականջներս ոչ ուրեք կը լսեն ձայնդ , բերանս ոչ ուրեք կը համբուրէ ձեռքդ , զի ոչ ուրեք ես վերջնապէս . . . . ։ (Յերկինս) ։ »

Հայ տիկին , և դու չե՞ս ողբար և սգար քո մօր մահն , սոյն հայ բանաստեղծ կնոջ նման ։

Հայ ընտանիք բոլոր զգան վսեմութիւնն մայրենի , և իմանան մօր կորստեան մեծութիւնն ։

Նահապետական կենաց մէջ հարիւրաւոր մարդիկ ի միասին կ'ապրէին և իրենց հայրենիքը մի էր , գերեզմանական կենաց մէջ մեռեալք ի միասին կ'ապրին , և իրենց հայրենիքն է մի գերեզմանատունն ․ կը յարգեմք մեր նահապետաց յիշատակն և էր չ'յարգեմք և մեր մեռելոց յիշատակն ։

Ցաւա՜լ՝ երբ քաղաքակրթութիւնը չէր ծաղկեալ այնքան, այլ բարուոյն և ճշմարտին զգացումներն էին ծաղկեալ, բարեպաշտութեան ու առաքինութեան գաղափարներն էին զարգացեալ, յայնժամ մեր նախնիք ի՛նչ կ՚ընէին իրենց ննջեցելոց համար, ի՛նչ յարգանք, ի՛նչ պահպանութիւն նոցա գերեզմանին. առ այս բաւեն պատմութիւնք և հայ գերեզմանատունքն վկայեն, որ այսօր կործանուած են ու չ՚ունին պարտ ու պատշաճ դիրքն։ Կէս քաղաքակրթեալ ազգերէն եթէ իջնեմք վայրենի ազգաց մէջ, թէպէտ և հին, այլ ի՛նչ ազնիւ և քաղցր սովորոյթք պիտի տեսնեմք, ուրեք ուրեք թէպէտ պիտի երեւին մեզ վայրենական քօղին տակ այնպիսի տօներ, որ ծածկաբար մեզ յայտնեն թէ նոքա վառ կը պահեն ննջեցելոց յարգանաց սէրը վայրենի սրտերու մէջ իսկ. վայրենիներ կը մտածեն տօներ կատարել ննջեցելոց համար, զի չ՚մոռանան առ այնս ունեցած սիրոյ ու ցաւոց զգացումներն։ Ստոյգ է, այո՛, մինչ ստոյգ թէ հինն է պատուական, մեր հին ժամանակաց հայրերը տարբեր կերպով կը մտածէին իրենց աշխարհական ու գերեզմանական կենաց վրայ, մեր հին մայրերը տարբեր կերպով կը խորհէին իրենց ազնուութեան, բարեպաշտութեան, լուսաւորութեան և յառաջացման վրայ, գիտէին ընտրել, զոր ինչ կը համապատասխանէր իրենց հայրենի ու աւանդական սովորութեանց և գիտէին հետեւիլ ըստ այնմ անոր. այժմ նոքա իրենց հնութեամբը մեզ պատուական ոգիներ ճանչցուած

են, իրենց պարզութեամբն, իրենց առաքինութեամբն, իրենց պարտաճանաչութեամբը քան զմեզ երանելի, քան զմեզ նախանձելի են համարուած. ճանչցած չ՚ե՞ք զանոնք, անուանե՞մ աստանօր այդ հին, այլ պատուական հայրերն ու մայրեր, բայց այժմ լռել լաւագոյն է:

Մեր աչաց առջեւ ունինք գերեզմանատուն մի, ուր դեռ մի քանի տարիներ յառաջ չէր դադարած հայ աղջիկն ու հայ մայրիկը տխուր ու արտասուալից մտնենալ և հոն՝ գերեզմանի մը քով աղօթել ու ողբալ, դեռ քիչ տարիներ յառաջ, որդին կը պճնէր իւր հօր և մօր գերեզմանն, ծաղիկներով ու ծառերով, հովանաւոր տերեւներով կը ծածկէր նորա հողն թաց, կը դնէր շիրիմ մի ի յիշատակ նորա և ի յիշատակ իւր որդիական սիրոյն, և որմերը կ՚արգիլէին շուրջանակի ամբողջ գերեզմանատունն, զի պիղծ ոտք մի կամ զուարճութեան թմբուկը չ՚մտնէ հոն, ուր արտասուաց ու ողբի, ցաւոց ու տրտմութեան է սոսկ վայր: Որոշուած էին յատուկ օրեր «Մեռելոց օր» անուամբ, զի ամեն ոք իւր մեռելոյն յիշատակը տօնէ այն օր, և կատարէ իւր յարգական ու գերեզմանական պարտիքն, այլ այսօր այդ ալ լոկ Օրացոյցերու կամ Տօնացոյցերու մէջ կը կարդամք. վա՜յ յառաջդիմութեանս, վա՜յ բարեպաշտութեանս: Ահա այսպէս կը կատարեմք այժմ մեր պարտիքն առ ննջեցեալս, որպէ՞ս, չ՚խղճալով, մեր խղճին ձայնին իսկ չ՚անսալով և զանց առնելով այդ պարտքն:

Կ՚ըսեն խօլամիտ և զիրենք փիառուն ձեւացը-

նող արդի երիտասարդք ըսենք թէ՝ «Մեռելոց յարգանք ի՞նչ կը նշանակէ. քաղաքակրթեալ աշխարհն այդ ամէնքն առ ոչինչ կը համարի»։ Բայց ո՛վ անամիտ պարոն, ըսէ ինձ, այդ ո՞ր քաղաքակրթեալ աշխարհն է, որ խուր գերեզմանն դարձնէ ոտից կոխան, արահետ ճանապարհ, տեղի ամբարշտութեան. Գաղղիացի՞ն, Անգղիացի՞ն, Ռուսիացի՞ն, Գերմանի՞ն, Սպա՞նիան, Փորթուկալցի՞ն, Իտալացի՞ն, Շուէտացի՞ն, ո՞ր ազգն, ըսէ. թերեւս չգտնես Եւրոպիոյ մէջ այդ ակնարկած ազգը, և՝ ինքզինքդ պատասխանատուութենէ զերծանելու համար, ցանկես Եւրոպայէն դառնաս յԱմերիկա, և ցոյց տաս Ամերիկան։ Բայց անթահար պիտի լինիս և այդ տեղ, երբ ըսեմ թէ դեռ նոր, դեռ երէկ, Յունիս 14, ուրբաթ աւուր Արեւելքի մէջ կարդացինք Ամերիկեան թղթակցի մը նամակն ՚ի Նիւ-Եօրքէ որ կը նկարագրէր անդ արանց և կանանց բազմութեամբ կատարուած մեռելոց յիշատակն. հանդէս փառաւոր ու հոգեւոր։ Այդ թղթակցութենէն ահա՛ քեզ հատուածներ առ ՚ի խելամտացուցանել զքեզ։

«Նոճեաց բլուր կոչուած գերեզմանատան մէջ հազարապետ Զաքարիա Վորհիս նախագահեց հանդիսին....։ Պարագային յարմար աղօթքէ մը վերջն խօսեցաւ մեռելոց յիշատակին վրայ.....։»

«Այս տեսարանը կը տանի շատերուն միտքը դէպի այն օրերն, երբ զինուորական նուագներ ամէն օր կը լսուէին մեր փողոցներուն մէջ։ Այն

տանն Ազգին կեանքն իսկ էր մահուան վտանգի մէջ, և Ամերիկայի որդիներէն ազնուագոյնք տային ամէն պատուական բան....: Այսօր կենդանեքդ գարնան անուշաբոյր ծաղիկներ կը սփռէք մեռելոց գերեզմանին վրայ....: Ամերիկացիք պիտի մոռնա՞ն երբէք ծեր դիւցազնն, որուն վշտաց և նեղութեանց համար Ազգին սիրտն համակրութեամբք կը զեղանի. այն դիւցազնը, որ հիւանդ և հիւծեալ կը պառկի....: այն դիւցազներն և անոնց գործերն յիշեցի... զի այս պարտք մ'է, զոր մեք պարտիմք մեռելոց.... մեր ընկերակիցք ուր որ ալ ննջեն այսօր, անոնց հողն է սուրբ մեզ համար, մեռելոց գլխուն վրայ տնկուած ամենապարզ փայտի կտորն անգամ.... սիրելի է մեզ այնչափ, որչափ յղկեալ և քանդակեալ մարմարիոնն, վասն զի այն կը ցուցնէ անցորդին տեղ մը, ուր կը ննջէ ոմն, որ մեռաւ վասն Հայրենեաց:»

Միթէ մեք Ազգին ու Եկեղեցւոյն համար դիւցազն զաւակներ՝ հայրապետներ, վարժապետներ չե՞մք ունեցած, չե՞մք ունեցած մայրեր որդեգորով, որդիք հայրագորով, որ թողած լինին իրենց ամենէն պատուական բաներն 'ի փրկութիւն մեզ: Ամերիկացին, այդ Նոր Ազգն կ'զգայ մեռելոց յարգանքն և կ'ըսէ. «Ուր որ հանգչին մեր ընկերակիցք, այն հողն սուրբ է մեզ համար:» Ա՛հ, մեք հին, շա՛տ հին Ազգ մ'եմք, ինչո՞ւ չեմք ունենար այդ սուրբ զգացումն և ինչո՞ւ չեմք ըսեր. «Ուր որ հանգչին մեր արենակիցք, մեր մայրերն ու հայրեր, մեր

նախնիքն, սուրբ է այն հողն մեզ համար։ Ինչո՞ւ վէմ մի ցոյց չ'տայ անցորդին մեր ննջեցելոց գերեզմանն, որ մեռան վասն որդեկացն։

Բացառութիւնն յարգելով, ըսէք, ո՞ր որդին կամ ամուսինն կամ եղբայրն կամ կինն իւր ննջեցելոյն պարտուպատշաճ մեծարանքն ու պահպանութիւնն ընծայեց. մի քանի օրեր, ամիսներ, ամեր միայն սուգ դրին մեր վրայ մեր ննջեցեալք՝ առանց պարտաճանաչութեան տուրք մ'ալ դնելու. երբ հետեւէինք մեր նախնեաց, անշուշտ այսօր այն գերեզմանատունն ճանապարհաց անցք մի չ'պիտի լինէր։

Մարգարէն երբ կը տեսնէ թէ իւր՝ Իսրայէլի ժողովուրդն լքեալ, տառապեալ, արհամարհեալ է, գեղեցիկ և սրտառուչ իմն կը նկարագրէ այլաբանօրէն նորա վիճակն և Աստուծոյ գթութիւնն կը հայցէ։ Իսրայէլ այգւոյ կը նմանեցնէ ըսելով. «Այգի յԵգիպտոսէ փոխեցեր, հաներ զհեթանոսս և զնոսա տնկեցեր և առաջնորդեցեր նմա։ Հաստատեցեր զարմատս նորա, և ելից զերկիր ծածկեաց զլերինս հովանի նորա, և բարունակ նորա զմայրս Աստուծոյ։ Ձգեաց զորթ իւր մինչեւ 'ի ծով, մինչեւ 'ի գետս են շառաւիղք նորա։ Ընդէ՞ր քակեցեր զցանկ նորա, կթեն զնա անցաւորք ճանապարհի։ Ապականեաց զնա խոզ անտառի, և երէ վայրի արածեցաւ 'ի նմա։ Աստուած զօրութեանց, դա՛րձ հայեա՛ց յերկնից, և տե՛ս, ա՛յց արա այգւոյս այսմիկ, և դարման տար սմա՝ զոր տնկեաց աջ քո»։

Ահա ճիշդ մեր հայ գերեզմանատունն մի և նոյն նկարագիրն ունի. Իսրայելացիք ունեցան Մարգարէ մի, որ բերնով կ'աղաչէին զԱստուած. մեր ննջեցեալք որ նոր Իսրայէլ և ննջող ժողովուրդ մ'են, և իրենց գերեզմանատունն հոգեւոր 'դաւիթ մը, զի «'ի կրօնասէր յայնմ ՀԱՆԳՍՏԵԱՆ Աստուած խօսի», չունին նոքա ձայն աղերսելու մեզ, որ զերծանեմք զիրենք ապականութենէ և անպատուութենէ. կենդանիներէն պէտք էր յառնել այդ Մարգարէն և ձայն տալ հայ զաւակաց ըսելով. «Ասոնք ձեր հայրերն, ձեր մայրերն, ձեր քոյրերն, ձեր եղբայրներն են, նոքա այնքան սիրեցին և հոգացին զձեզ, որ շատերն իրենց կեանքն իսկ զոհեցին, նոցա երախտիքն ոչ միայն դուք վայելեցիք, այլ բոլոր անոնք, որ կարօտ էին և ունէին հայկական տիպար մի, նոցա գթութեան հովանին ծածկեց մինչեւ իսկ լեռներն, նոքա երախտագիտութեան մեծ պարտք մի դրած են 'ի ձեզ. արդ նոցա հանգստեան տեղին անցուդարձ եղած է, ինչո՞ւ քակեցիք նոցա ցանկն՝ որ մերն ալ է, անտի կը մտնեն եզներն ու կովերն, ոսկերն կը թաւալին, ըմպիչք մենակուռին, հայ զաւակներ զուարճութեան տեղի առնեն. Հոն կը մտնեն ամէն ազգէ, ամէն լեզու ու անպարկեշտ բնութենէ մարդիկ: Ո՛վ հայրեր և որդիք, դարձէ՛ք կատարեցէ՛ք ձեր պարտքն և ամբացուցէք այդ գերեզմանատունն որմերով, ընդ որ պիտի անցնիք և դուք ննջել հողոյն տակ քունն յաւիտենական: Այս ձայնին 'ի լուր պիտի

զարթնուն, պիտի սթափին որդիքն անտարբեր և պիտի կատարեն իրենց պարտիքն ։ Եղաւ այդ առաջնորդ հովիւն քաջ, այդ Նոր Իսրայէլի Մարգարէն. այո, Հայ ազգն ունեցաւ զայն յանձին Գեր. Տ. Մատթէոս Ս. Եպիսկոպոսի Իզմիրլեան ։

Ընդ իս մտէք նախ այդ գերեզմանն. ինչ սոսկալի ու տխուր հանգիստ. տեսնէք բոլոր ձեր ննջեցեալներն են, որ չ՛ունին իրենց մնարն դէթ կանանչ ծառ մը հովանաւոր կամ ուռի մը արտասուող, չ՛ունին քար մը որ դրուած լինին ի Ջէնչ (վերջին ասածներս, թէեւ կան քիչ բացառութիւններ) նոցա հողակոյտն անցորդք անխնայ կոխ ըրած են, արջառք ոտից կոխան ըրած և մեզ ի զուր որոնել կուտան մեր սիրելեաց հանգիստն ։

Դարեր յառաջ Հիւկոն Փոսկոլօս, որ կ՝ողբայր իւր գերեզմանական տաղովը ընդ Հիպպոլիտոս և ընդ Պինդեմոնտ, կ՝ըսէր.

«Թէ երկիրն, որ զնա մանուկ ընկալեալ նախ և
սնուցանէր,
Վերջին ապաստան ՚ի մայրենին մատուցեալ ծոց
Սուրբ ընծայարան առնէր ՚ի Թոնընկէց թշնամանաց
Եւ ՚ի խառնէ ռամկին ոտից, և պահեացէ վէմ մի
զանունն,
Եւ զարդեացէ տունկ ծաղկահոտ սիրուն՝ զանխուն
հեշտ հովանեաւ ։»

ՏԱՂՔ ԳԵՐԵԶՄԱՆԱԿԱՆՔ
Թրգմ. Հ. Ա. Կ. Թ.

Բայց ո՞ւր, ո՜վ Փոսկոլոս, ո՞ւր այդ վերջին ապաստան, ո՞ւր այդ սուրբ ընծայարաններ, ո՞ւր այդ

վէմ յիշատակի, ո՞ւր այդ տունկ ծաղկահոտ և սիրուն, ո՞ւր այդ հեշտ հովանի. դու կ'զգուշացնես սուրբ նշխարաց նախատինք բերող կացութենէն, կը զգուշացնես ռամկին ոտից կոխան ըլլալէ զայն, կը յորդորես ծաղկահատ ծառեր ունենալ. այդ ամենքն ո՞ւր պիտի տեսնեմք։ Դարեր յառաջ այսպէս կ'զգան ու կը գործեն օտարազգիք (1), դարեր կ'անցնին, կը պահեն նոքա իրենց սովորութիւնն այն, և մեք կը պարծիմք հետեւող լինել եւրոպական սովորութեանց, այո՛ կը հետեւիմք, բայց միայն այն բաներուն, որ զմեզ կործանելու, զեղծանելու, ապականելու բնութիւն ունին։ Ի՞նչ կ'ընեմք. կ'սպանանեմք մեր խղճի ձայնը, մեր բարոյական զգացումներն. մեր բարեպաշտական զգացումները կը մարին . . . ։ Յառա՛ջ կը դիմեմք։

Վա՜յ մեզ, մեր նախնեաց, մեր հարց ու մարց գերեզմաններն չ'կամիմք յարգել. կը թողումք զի ապականուին, կը թողումք զի նոցա հանգստեան խորխորատն անարգուի, պղծուի ի նախատինս նոցին և առաւել ի նախատինս մեզ։ Իրաւ է թէ կան հոն գերեզմանատան մէջ պերճ դամբարաններ, զորս զաւակք ծնողասէր, նուանք ազնուատոհմք, որպէս նուանք Պրիամու, կանգնած են և տնկած ծառեր և թրջած յայրութեան յարտօսր. ի զո՞ւր պիտի քրտնիս ո՛վ ժամանակ, արմատաքի կորզել մեր սրտերէն սիրոյ և պատուոյ զգացումներն, ի զո՞ւր քո սեաւ

(1) Իմա՛ Եւրոպացիք։

դրօշակդ պիտի ջանաս ծածանել Հայ երկնին վրայ, ի զո՛ւր անտարբերութիւն և ցրտութիւն ներմանել պիտի գաս, քու համայնակուլ ընթացքովդ՝ Հայ սրտերու մէջ. ի զո՛ւր արեան գծերով պիտի ճգնիս դրոշմել Հայուն կուրծքին վրայ ՆԱԽԱՏԻՆՔ։

Բայց այդքանը չէ՛ բաւական, ի՞նչ շահ երբ լոկ խիստ մեծատանց գամբարաններն կարեն ազատ լինել յայդ անարգանաց, ի՞նչ ընէ անդին այն, որ չէ այնքան հարուստ, որչափ էր ինքն, այն, որ թշուառ է և ա՛ւուր հացի իսկ կարօտ, այլ կը փափաքի իւր այդ վիճակին մէջ սուրբ պահել իւր ննջեցելոց գերեզմանն։ Գերեզմանատունը մասնաւորաց չէ՛, գերեզմանատունը ընդհանուրինն է, ուր ամփոփուած են հարուստն ու աղքատն ի միասին։ Երբ թշուառի մը գերեզմանն անարգուած, պղծուած է, անարգուած կը համարուի ամբողջ գերեզմանատունն և երբ ամբողջ գերեզմանատուն է անարգուած, անարգուած կը լինի նաև այդ մեծափարթամ մեծատանց դամբարաններն։

Քրիստոս փոխեց գերեզմանաց բաղդն, փականք ու պահակք չ՚կարացին արգիլել այդ յեղաշրջում, Քրիստոս պատուեց գերեզմանն և հրեշտակը թաւալելով վէմն ի բաց ցոյց տուաւ այն գերեզմանն թափուր, գոչելով «Յարեաւ Քրիստոս, աւետիս»։ Այս գերեզմաններն շարունակութիւնն են այն գերեզմանին, ուր թաղուեցաւ Քրիստոս, ուրեմն Քրիստոսի են այս գերեզմանք, Քրիստոնեայ գերեզմաններ են սուրբ։

Մահն՝ մանկան ու մօրկան չ՚խնայող մահն ա-նագորոյն՝ որ կը պարտաւորէ զմարդ հրաժարիլ աշխարհէն, կեանքէն ու փառքերէն աշխարհի. այն մահն առաւել քստմնելի ու գարշելի չէ մօր, որչափ իւր զաւակն անտարբեր, անփոյթ, պարտազանց և անարգ. ա՛հ, մօր սերնդեան արժանաւոր ժառանգ սոսկ անտարբերութիւն մնաց, առ ինչ ծառայեցին ուրեմն այն մայրենի խնամքներն ու սէրն, այն չարայլուկ մարտիրո-սական կեանքն, ո՞ւր մնացին այն փառքերն, այն պարտքերն, այն տաժանելիր աշխատութեանց երախտահատոյց որդիներն. լոկ խորտուկլա՞կ մը ժառանգ ունենալու համար ծնաւ զքեզ, ո՜վ որդիդ ապերախտ։ Ո՜վ խաբէութեան, ո՜վ ար-համարհանաց, ո՜վ անիրաւութեան։

Գ.

Երբ ազգային, կրօնական և ընտանեկան, համայն առել՝ մարդկութեան պարտականու-թեան զգացումներ կ՚անջատին, կ՚անհետանան, հո՛ն մարդ կ՚եղծանի, կը զառածանի, ազգային զգացմանը անջատուածն՝ արհամարհուած է ազգէն, կրօնական զգացմանը անջատուածն՝ ար-համարհուած է կրօնքէն, ընտանեկան զգաց-մանը անջատուածն արհամարհուած է ընտանի-քէն, միանգամ առել՝ մարդկութեան զգաց-մանը անջատուածն, արհամարհուած է ամբողջ մարդկութենէն, և եղած հաւասար անասնոց աստիճանին։ Հարցունենք մեր ծերերուն. — Հա-րիւր տարիներ յառաջ այսպէս էր մեր գերեզ-

մանն, ով ծերունիք : — Ո՛չ, կը պատասխանեն մեզ, մեր նախնիք պատրաստած էին զայն շըրջապատ ազմով, և հոն գերեզմանաց վրայ զետեղած չիրիմներ, որոց քովէն կը բարձրանային երկնուղէշ ծառեր՝ սաղարթագեղ և համատարած, ուր մտնողը կը զեղոյր թախծութեամբ և բարեպաշտիկ ու սուրբ և տխուր զգացմամբք դուրս կ՚ելնէր՝ իւր հետ տանելով մէկ նոր զգացում, որ կ՚ամրապնդէ պարտաճանաչութեան կապերն · դուրս կ՚ելնէր անտի, ուր երկին՝ արտօսր, այերք՝ արտօսր, հողեր՝ արտօսր, ծառեր՝ արտօսր, սղոխք՝ արտօսր, համակ արտօսր կը հեղուն · անտի, ուր ծառերն սգաւոր, ծառեր դալարաւոր ցաւոց ցօղեր կը ցօղեն, հո՛ն լպիրշ փուժան մի ցնծութեան ցօղեր, ա՛հ, կը դղրդեն զգացումներս, կը վիրաւորի բարեպաշտութեան սիրտ մի, երբ կը լսէ թէ հոն ըմպելեաց ցօղեր իսկ կը թափեն, ուր մեռեալ հողեր՝ մեր սիրելեաց մի մելամաղձիկ տխրութիւն կը թողուն անողոք սրտերուն զգացմանց խաւերն թափանցելու չափ, ուր սայլերու գլգլոցները կուգան խռովել այդ բարեպաշտիկ զգացմամբ զեղուն ուպարարուն սիրտն · իրաց այս վիճակին մէջ երկին զմարդն անիծէ, երկիր զմալութիւն արծարծէ, հոգիք տխուր դիտեն զգամբանն, մարդիկ ի լուր կան թմբկան, աստղերն յերկնից ողբան, պլպլան, հաւեր ընդ այեր ճխան, կկլան և ընդ նոսին ալորան անհուն արձագանգէ «աւա՜ղ մարդուն, աւա՜ղ մարդուն :» Աւա՜ղ մարդուն · առխմէ՞ այդ «աւա՜ղ,» զի մեր առ մեռեալս

ունեցած պարտուց կատարումն, մի բարեպաշտական և յարգական վերջին զգացումն ի գործ կը դնեմք կոխոտելով, անարգելով նոցա գերեզմանները, նոցա՛, որ մեզ կեանք տուած են և մեզ համար զոհած են իսկ իւրեանց կեանքն: Ա՜հ, ի՜նչ դժպհի փոխարինութիւն: վա՜յ: Մեք, մեր նախահարց սերունդքս, պարտաւոր եմք մնացած առ ազգն, առ կրօնն, առ ընտանիս, առ մարդկութիւնն և հետեւաբար անոնցմէ անարգուելու ենթարկուած. փութա՛նք այդ աղարտը բառնալ ի մէնջ:

Ի՞նչ ըրինք սակայն մեր նախահարց գերեզմանին. այո՛, ըրինք ի՛նչ որ չէր պատշաճ, չըրինք ինչ որ էր օրէն. քակեցինք որմերն, հաստատելու տեղ, քակեցինք շիրիմներն, պահպանելու տեղ, խլեցինք արմատաքի նոցա տնկած ու ջրած ծառերն՝ ոռոգելու և ծաղկեցնելու տեղ. նոցա շիրմաց ա՛ղօթք ու յարգանք ընծայելու տեղ, անտարբերութիւն և արհամարհանք ընծայեցինք. դեռ ի՞նչ կ'ուզեմք ընել:

Ցաւա՛լ քան յիսուն ամեր, թերեւս երեկ, թերեւս այսօր. թերեւս այս ժամուս, այն, որ 'ի կեանս էր, և յայդմ անարգած իւր պարտաճանաչութիւն և հետեւած այն պարտազանցութեան, որ յարգանք կը գլանայր առ գերեզմանս. արդ՝ նա գացած միացած է նոցա. իւր անարգանքն իրեն ալ կը դառնան. իւր նախատինքն իրեն ալ կ'ըլլան — ո՛յց կողմանէ — անոնց, ոյց պատճառն է ծննդեան, սերնդեան. միով բանիւ իւր ընտանեաց կողմանէ. այն զանցա-

ուութիւն, զոր ունեցած էր առ կենդանու-
թեամբն առ գերեզմանս, նոյն զանցառութիւն
ունին նաեւ իւր ընտանիքն իւր տխուր գերեզ-
մանին. ահաւասիկ մեր մեռելոց յարգանքն,
ահաւասիկ մե՛ր ալ յարգանքն: «Զոր ինչ չափով
չափէք չափեսցի ձեզ:»

Պիտի փափաքէ՞ինք որ այդ անարգանաց և մեր
գերեզմանն մատնուի, և մեր որդիքն չ՛գան իսկ
մեզ 'ի յայց կամ յաղօթել կամ յարտասուել, և
ի պահել մեր գերեզմանն անարատ, սուրբ և վա-
յելուչ: Այո՛, հաւատամք. այդպէս պիտի ընեն
և մեր որդիքն, մեր ընտանիքն, երբ տակաւին
անտարբեր գտնուիմք նոյա այդ մահաշշուկ յի-
շատակին, այդ սուրբ պարտաճանաչութեան
գործադրութեան. ա՛հ, օր ըստ օրէ կը յետա-
դիմեմք, օր ըստ օրէ կ՛ուծանամք մեր կրօնա-
կան վսեմ զգայումներէն, մեր պարտաճանա-
չութենէն, օր ըստ օրէ կը հեռանամք մեր խղճի
ձայնին արձագանգաց չեշտերէն, օր ըստ օրէ
կործանմա՛ն կը դիմեմք . . . : Ի՞նչ կ՛ընէք, ար-
դէն կարի իսկ յուսահատած եմք մեր արդի
վիճակին մէջ. ամեն ինչ կերպարանափոխ է.
մանկունք ամէն՝ նուազ զգայուն են և հեզահո-
գի, պատանիք՝ նուազ ազգասէր և կրօնասէր և
առաքինի, ծերք՝ նուազ պատկառելի և հեռա-
տես ու խոհեմ. ամէն ինչ այսպէս . . . . . . ա՛հ,
կեանքն համայն՝ նուազ երջանիկ. ամէն ինչ որ
բարի է խոյս կուտայ մեր առջեւէն, ամէն ինչ
որ դժնեայ է մուտք կ՛ունենայ մեր մէջ. այս
տագնապի մէջ յուսահատութիւն, յոռութիւն,

*տխրութիւն և արհաւիր, սեթևեթք, չուայլութիւնք, մոլութիւնք կը խառնուին միմեանց և կը կազմեն տասն և իններորդ դարու վերջին կիսոյն մի նորօրինակ քաոսն. պահ կանք այժմ քաոսին և գերեզմանին ընդ մէջ և այդ անջրպետը կը բաժանէ մահն : Գոցեմք այս տխուր քօղն. այգ քաոսէն ցատկեմք մտնեմք գերեզմանն : Գերեզմանատունն կը պարունակէ իւր ծոցն այլ և այլ աստիճանի, սեռի և տաղանդի և պատուոյ մարդիկ, այդ զանազանութիւնքն կրնամք ընդհանրապէս երեք բաժանման վերածել. 1° Կրօնական. 2° Ուսումնական և 3° Անհատական :*

Դ.

ԿՐՕՆԱԿԱՆ. — *Այս կարգին մէջ պիտի տեսնեմք այնպիսի բազմերախտ և ազգասէր Հայրապետներ, որց շիրիմն պարտ էր առաւել պատուաւոր կայք մի փոխադրուեր, որց գերեզման պարտ էր սուրբ պահուեր, որպէս սուրբ պահուած էին ինքեանք, ոչ թէ ողողէ, խնճոյից ու պարուց հանդիսավայր դարձնել իրենց հանգիստն, և իրենց շիրիմն յօրինել սեղան նպարեղէնաց և ըմպելեաց, ոչ թէ իրենց գերեզմանաքարերն շինել խահուէխանէ : Ի վաղնջուց հետէ նշանաւոր արանց արձաններ, կոթողներ կը կանգնէին. Գաղղիա այսօր չգիտէ ինչ միլիոններ ծախսէ, չգիտէ ինչ յարգանքներ ընէ, ինչ շիրիմ, ինչ կամարներ շինէ Հիւկոյի՝ իւր մեծ բանաստեղծին, բարերարին համար. մեր*

բարերարաց, մեր բանաստեղծից, մեր մատենագրաց համար մեք ինչ կ՚ընեմք, ինչ եղած են արդեօք Սահակայ, Մեսրովպայ, Խորենացւոյն, Եզնկայ, և 'ի նորա Հայ Պատրիարքաց և Մատենագրաց չիրիմներն · լռել արժան է քան խօսել: Մեր Հայրապետք առաւել գործած են քան զոր չէին գործած Արշակ, Վարազդատ ու Վաղարշակ · սոքա քաջութիւն ունէին բազկի, նոքա 'քաջութիւն՝ մտաց, քաջութիւն՝ առաքինութեան, քաջութիւն՝ իրենց հովուական պաշտաման մէջ: Ո՛վ ընթերցող հայկազն զաւակ, շատ ունկնդրեցիր ինձ, քիչ մ՚ալ եկ ընդ իս շրջել այգ աւերակ դարձած գերեզմանատունն · քիչ մ՚ալ թող գերեզմաններն խօսին քեզ և զանոնք լսելով քիչ մ՚ալ դու խօսէ ինձ: Բայց պէտք է գիտնաս թէ ամէն մէկ չիրիմ իւրեան համար շատ բաներ ունի խօսելիք · ուրեմն պէտք է զկայ առնուլ իւրաքանչիւր տապանաքարերու առաջ, որ կը ծածկեն իրենց ներքեւ մի Սրբազան Հայրապետ, պէտք է քննել նոցա կեանքն, հիանալ և զարմանալ, միանգամայն և հառաչել:

Ահա եմք մի ալեզարդ Պատրիարքի չիրմի քով, մի պերճախօս ու աստուածաբան, վաստակաւոր ու խոհուն Եպիսկոպոսի չիրմին սնարն, որ 13 տարիներ Պատրիարքական փափուկ պաշտօնն վարելով Տէրութեան և Ազգին սիրելի եղած և 40 տարիներ Աստուծոյ բանն քարոզած և 1817 Յունվար 27ին գնացած է հանգչիլ 'ի գերեզման:

Նա տագնապալից և վտանգաւոր ժամանա-

կաց մէջ Ազգին վարչութեան ղեկն 'ի ձեռքն Ազգ. Նաւն վարեց անքոյթ ու խաղաղիկ: Շինեց եօթն եկեղեցիներ, ատեց փառքն, արհամարհեց զաշխարհ, այլ սիրեց ունենալ. Ի՞նչ. անեղծ ու սուրբ պահուած գերեզման մի:

Տասն և իններորդ դարու Հայ հասարակութիւնը կը ճանչնայ, այո, երախտաճանաչ լինել գոնէ այդպիսի հոյակապ անձանց յիշատակին. բայց սակայն ե՞ր լռեմք ճշմարտութիւնն. մեր Նախնի Սրբազան Հայրը, մեր Նախնի բարերարք չէին արժանի այդ երախտագիտական զգացմանց. Յովհաննէս Պատրիարքի շիրիմն մրգավաճառի սեղան կը դառնայ. եթէ կատարուած է նորա արժանի երախտագիտութիւն մի, եթէ շիրիմն կը ծածկէ նորա մարմինն և մեզ ցոյց կուտայ զայն ԱՍՏ ՀԱՆԳՉԻ ով, բայց չէ այն հանգչած սուրբ գերեզմանատան մի մէջ: — Յովհաննէս Պատրիարքը նուազ արժանի է երախտագիտութեան: Կարդա՛ իր շիրիմն և նա քիչ տողերու մէջ պիտի խօսի քեզ շատ բաներ:

Յուզուեցայ սիրտս առաւել որչափ չյուզուեցայ երբ զկայ առի իմ սիրելի մօր գերեզմանին առաջ, աչքերս լեցուեցան արտասուօք, երեւակայութիւնս բորբոքեցաւ, զգացումներս զեղան, յիշատակն օրհնեալ ըլլայ կոչեցի, և ուղղուեցայ դէպ ի մի ուրիշ շիրմի քով, որ վրայ կարդացի ՄԱՀԱՐՁԱՆ ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ ՊԱՏՐԻԱՐՔԻ:

Կքէ ծունկդ այդ գերեզմանին առաջ. կքէ ծունկդ այդ շիրմին առաջ. կքէ ծունկդ այդ պատուական ծերունազարդ Պատրիարքի առաջ.

աչքերդ դարձուր հո՛ն, յատակն գերեզմանին. այն գերեզման շատ բաներ պիտի խօսի, շատ բաներ պիտի աւանդէ քեզ· քո անտարբերութիւն պիտի դադրի վայրիկ մի, քո ժպիտ արտասուաց պիտի փոխուի· այդ արտասուք հեղեղ պիտի կապեն և պիտի երթան յանգիլ հոն, ուր հող դարձած է մեր սիրելին· կքէ ծունկդ, ձեռքերդ ամբարձ 'ի վեր· այժմ պիտի զգաս սրտիդ մէջ մի յուզումն, երևակայութեանդ մէջ մի տխրութիւն, հոգւոյդ մէջ անմահութիւն, կենացդ մէջ մի ձայն արհամարհող· նման այն ձայնին, զոր կը կարծէր լսել Կայէն՝ և թափառականն «Քալէ, քալէ»:

Այդ լռութեան և տխրութեան մէջ զկայ ա՛ռ և ունկն դի՛ր:

ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ ՊԱՏՐԻԱՐՔ, այս անուն կը դարձընէ զմեզ յետս ընդդէմ, այնպիսի ժամանակի մը մէջ, ուր բարեպաշտութիւնն և բարեսիրութիւնը զուգընթաց կը յառաջանային, բարեպաշտութիւնն՝ Աստուծոյ ծառայութեան մէջ, բարեսիրութիւնն՝ մարդկութեան և ազգին ծառայութեան մէջ, և ո՛ ոք պիտի կարենայ ըսել թէ՝ այդ ամեն՝ առաքինութեանց վսեմագոյնը չ'են, և ոչ պիտանի՝ մարդկութեան· ամեն շըրթունք խոստովանին նոցա պէտքն ու օգուտ· արդ այն որ պիտանութիւն մի ունի իւր տեսակին մէջ, ունի նաեւ առ այն պարտականութիւն մի, հակառակ պարագայի մէջ ապերախտութիւն և արհամարհանք կը ծնանին և եթ: կարդացէնք իւր չիրիմն, կարդամք իրեն կեանքն ալ:

Իւր երիտասարդութեան հասակին մէջ, այր բարի և աստուածավախ, ազգին, կրօնին հաւատարիմ, առաքինութեան տիպար, այս Պատրիարք Կ. Պոլսոյ, ծերունի այլ կորովի հասակի մէջ: Նա արժանավայել կերպիւ կը կառավարէ Ազգն վառ պահելով կրօնի և ազգային զգացումներն ամեն Հայ սրտերու մէջ, և արծարծելով ի նոսա բարեգործութեան եռանդն, և յորդորելով և հրաւիրելով առ այն: Այսոցիկ վկայ թող լինի ժամանակակից և նորա կենաց գիտակից ժողովուրդն, իւր բարեգործական հաստատութիւններն. ոչ ապաքէն կենդանի և մշտնջենաւոր վկայ է Իւսկիւտարի Նոր-Թաղի Ս. Կարապետ եկեղեցին, որ բեմին վրայ բաւական տարիներ Աստուծոյ բանն քարոզած՝ և հովուած է ժողովուրդն. այդ չքնաղ շինուածքն ահա իւր ալեզարդ հասակին, հաստատամիտ և անվհատ բնաւորութեան արդիւնքն է, եկեղեցի նորոգել ի հիմանց այնպիսի ժամանակի մը մէջ, ուր շատ խոչնդոտներու կը հանդիպի մարդ. արդարեւ արժանի է յիշատակութեան և երախտագիտութեան:

Այդ ծերունազարդ Հայրապետը պիտի գանդատէր մեզ եթէ ներելի լինէր նմա յառնել և բարբառել, զի աւերակ ու հրապարակ գործած էինք իւր գերեզմանատունն, ուր Հայ մի չէր երթար աղօթել կամ արտասուել, չէր երթար մի տխուր յարգանք մատուցանել: Աստուածատուր և Յովհաննէս Պատրիարք այդ հրապարակային պողոտայ դարձած գերեզմանատան մէջ

*կը հանգչի՛ն, և աստի՛ն Նոր ժամանակաց մէջ ան-նշան մի մարդ, այլ հարուստ՝ կը թաղուի եկե-ղեցւոյ մէջ. ա՜հ, ի՜նչ կործանումն արժանա-պատուութեան. 100 ոսկւով արժանի լինե՛լ ա-ռաւել պատուաւոր և յիշատակելի վայր մի՝ Պօլ-սոյ ամենէն նշանաւոր եկեղեցւոյն մէջ հանգչիլ։ Դրամն արժանիքը կը նախամայնէ՛ ։ Է՜հ ոչինչ մի գումար՝ Ազգին կեանքն երաշխաւորող անձերն կը գը-լէ․ ․ ․ ․ ։ — Աստուածատուր Պատրիարք նը-ուազ արժանի է երախտագիտութեան։ Այս հարցեր կը յօրինեն իրենց մէջ այնպիսի ծածուկ արհամարհանք մի, որ ոչինչ նուազ զգալի կը լինի մեզ։*

*Կուսանք հայկազունք, հարսունք փափկա-սունք, ո՞վ է այս, որ գերեզմանաքարն հողէն մէջէն դեռ նոր է հանուած գոգցես, կարդա-ցէ՛ք վրան․*

**Այս է Տապան Տամբարանի Զաքկիաս վարդապետի։ Նորոգող սուրբ Կա-րապետ եկեղեցւոյն Նոր։ Մահլայի։ Վաղջանեցաւ։ Մերս ✻**
**✻ Թվին․ ՌԿԶ ✻** (1)

---

(1) ՌԿԶ էն մինչեւ ՌՅԼԴ․ այսինքն 1066էն մինչեւ 1334 ժամանակամիջոց մ'է 268 տարուան, որ է մահուան Թուականը։ Յայտնի չէ Թէ քանի՞ տարի յառաջ Նորոգեր է եկեղեցին, եւ Թէ եկեղեցւոյն շինութիւնն առաջին անգամ ե՞րբ եղած եւ ո՞վ ըրած է։

Ա՛հ, Թուականն ալ տես, երկու և կէս դարէն աւելի մի քար, բայց ո՛ւրկէ հանած են զայն. առաջ կ'անցնէի անտի և կը կոխոտէի այն քարն և այն գերեզմանն, որուն վրայ հողը ծածկուած էր և խոտեր բուսած էին։

Ո՛վ է այդ վարդապետը։ Իւսկիւտարցի ժողովուրդն երբ եկեղեցի չ'ունէր աղօթելու, այդ վարդապետն, օրհնութեամբ յիշատակելի Հայրն, իւր անձը վտանգի մէջ դնել յանձնառու լինելով ժամանակին տիրող խստութեան հակառակ Նոր-Թաղի Ս. Կարապետ եկեղեցին կը նորոգէ. սա եկեղեցի կը շինէ Ազգին, Ազգն իւր շիրիմը կը կործանէ, իւր գերեզմանն անյիշատակ կը թողու մինչեւ որ գերեզմանատան որմերու շինութեան Յանձնաժողովոյն Նախագահ՝ Իզմիրլեան Գեր. Տ. Մատթէոս Սրբազան նորախոյզ քննութեամբ կը գտնէ նորա գերեզմանն, կը փորէ և հողոյն մէջէն կը հանէ տապանաքարն և չ'թողուր որ յաւիտեան մոռացուի այդ անձնուէր վարդապետի անունն ու յիշատակելի գերեզմանն։

Ո՛վ հեզասահ Հրազդանի համեստ զաւակդ Հրազդա՛ն, կ'ըսէք թէ «Մեռեալք գերեզմանի մէջ սփոփ պիտի գտնեն, եթէ զիրենք սիրող աչքեր արտասուեն». բայց միթէ ներելի չէ՞ մեզ ըսել թէ առաւել եւս սփոփ պիտի գտնեն նոցա ոսկերքն, եթէ զիրենք սիրող ձեռքերը գործեն, սրտերն զգան, միտքերը խորհին, փոխանակ աչքերն արտասուելու. զի առանց գործելոյ լացը պատիր է, առանց զգալու արտասուքը

կեղծ, առանց խորհելու կոծն ապարդիւն։

Հայք լացին անշուշտ երբ սոյն Եկեղեցական հայրերն ննջեցին. այլ դադրեցաւ այդ լաց, ըստ որում չ'գործեց ձեռքն, չ'զգաց սիրտն։

Ուրախ կը հեռանամք այդ նորագիւտ գերեզմանէն և կուգամք մի փառաւոր շիրմի քով. կը յառեմք մեր աչերն այն տապանաքարին, որ լռելեայն կը խօսի մեզ շատ բաներ. ցուրտ արտօսր կը հեղումք ԿԱՐԱՊԵՏ ՊԱՏՐԻԱՐՔ գրերուն վերայ և այնպիսի իմն կը թուի մեզ թէ այդ արտասուք կը փեռեկեն այն կարծրատոր մարմարին և կը թափանցեն սրբազնացեալ Հայրապետի մարմինն՝ հողն։

Ահա՛ մի վսեմ հանճար, մի ոգի անձնուէր. տարիներ, տարիներ տաժանելի, տարիներ դժոխմբեր։ Այդ սրբազան բերան քարոզեց անդադար հայ եկեղեցւոյն մէջ և ուսոյց առաքինութիւն, Ազգին ու կրօնին, երկրին ու մարդկութեան պատշաճ ու պահանջած պարտիքն։ Ընդ երկար իբր ութն տարի, Պատրիարքութեան դժուարատար պաշտօնն կատարելով արժանավայել կերպիւ հանգեաւ 1850 յուլիս 31ին։

Սա ևս պարզասէր էր իւր կենաց մէջ, իւր տապանն կը խօսի մեզ, բայց այդ պարզասիրութիւն չ'համեմատիր գերեզմանին անշուք պահելու պարզասիրութեան հետ (եթէ ներելի է ընել այս համեմատութիւն), կ'ուզէ նա պարզասէր լինել իւր կենաց մէջ, այլ իւր շիրմին մէջ փառաւոր և պատուաւոր։ Ի՞նչ տարբերութիւն ունի այժմեան մեր գերեզմանատունն այն պար-

տեղէն, ուր մէջ ազգի ազգի ծառեր են տըն-
կուած, այլ չ'ունի ցանգ. կենդանիք արձակ
համարձակ կ'երթեւեկեն հոն, առաթուր կո-
խոտելով ամէն հիանալի բոյսերն, անկուշելով
ամէն անուշահոտ ծաղիկներն. կամ այն չէնքէն,
ուր ներքնակողմն զարդարուած է տեսակ տե-
սակ զարդիւք և ճարտարապետական արուես-
տիւ, այլ չորս կողմն բաց, տանիքն անծած-
կոյթ, մէկ կողմանէ աւազակներ կ'աւերեն,
միւս կողմանէ անձրեւաց տարափք կ'ապականեն,
առ ինչ ծառայեց այն հիանքանչ կերտուած։ —
Կարապետ Պատրիարք նուա՞ղ արժանի է երախ-
տագիտութեան։

Քիչ մը վեր, մի քանի քայլ եւս, և ահա
ՍԱՐԳԻՍ ՊԱՏՐԻԱՐՔի շիրմին քով եմք։

Կարելի չէ նկարագրել այն ժամանակի Պատ-
րիարքական պաշտաման դժուարութիւններն,
յորում կը գտնուէր Սարգիս Պատրիարք։ Նա
60 տարիներ Տաճարի բեմէն քարոզած է Աւե-
տարանն, 60 տարիներ Եկեղեցւոյն ծառայել.
արդարեւ արժանի է երախտագիտութեան նա,
որ ննջեց 1865 յուլիս 28ին յաւիտենական ե-
րանութեան Դրախտին մէջ զարթնլոյ համար։
Ազգն գիտցաւ պատուել նորա գերեզմանն, այլ
չ'գիտցաւ պատուել նորա գերեզմանի պահպա-
նութիւնն։ — Սարգիս Պատրիարք նուա՞ղ արժա-
նի է երախտագիտութեան։

Դեռ կան շատ սրբակրօն Եկեղեցականներ՝
Եպիսկոպոս, Վարդապետ, Քահանայ, որ ամ-
փոփուած են անդ և որք տուած են մեծ ծա-

ռայութիւններ։ Օրհնութիւն և փառք Ձեզ, նախահարք մեր, Հայրապետք մեր, իսկ մե՛զ ո՛չ, մեզ անէծք և արհամարհանք միայն։

Իրաւ է թէ ժամանակն ու պարագայք արգիլեցին մեզ պահպանել այդ գերեզմանատան սուրբ գերեզմաններն, այլ մեր բոլոր անտարբերութիւն բոլորովին ժամանակին ու պարագայից վերագրել մտացի մարդու գործ չ՚է։

---

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ. — Այս կարգին կը վերաբերին տաղանդի մարդիկ, որք մեծ ծառայութիւն տուած են հայկական դաստիարակութեան. հայկական լուսաւորութեան։

Վայրիկ մի յառաջ խօսեցանք հոգեւոր Հարց վերայ, ոյց երախտապարտ եմք յոյժ մինչև մեր գերեզմանն, ոյց կրած տագնապն ու տառապանք միայն եկեղեցւոյն պահպանութիւնն. ու մեր անդորրութիւնն է եղած. վայրիկ մի յառաջ մեզ ներկայացան վեհ հոգւոց յիշատակներն, որք մտաց մէջ պարտականութեանց մրրիկ մի կը յարուցանեն, վայրիկ մի յառաջ մեր ոտքեր կը դեդեւէին, մեր սրտեր արիւն կը հոսէին, մեր ճակատք հուր կը ցայտէին, մեր աչքեր արտասուք աղբերէին, բայց ո՞ւր, ա՜հ, գերեզմանի մը եզերքն, ուր խորք կան գանգեր. վայրիկ մի յառաջ կ՚ըսեմ երբ Աստուածատուր Պատրիարքի շիրմէն կ՚անցնէինք դէպ ի վեր, բարձրավլիզ կոթողի մը նման համեստ յիշատակարան մի՝ շիրիմ մի նշմարեցինք, երթանք հոն

դայթ ի դայթ․ բայց ո՞ր այդ գերեզման, այդ հողեր սեւ ո՞ր, ո՞ր այն վէմ կճեայ. սեւ հողեր, այդ սեւ հողերն կանուխ մտնելդ դուշակերուդ համար գրեցիր փափկիկ ու դողորիկ մատամբդ այն «Սեւ հողեր», ո՛ երջանկայիշատակդ Պետրոս Դուրեան ։

Ո՛րքան ողբաց զքեզ Հայն, ո՛ պերճիմաստ ոգի, ո՛րքան սուգ պահեց քո յիշատակին համար, ո՛րքան ճիգն թափեց քո շիրմի կառուցման համար, այլ և ո՛րքան սիրտ ունեցաւ ցանկաքանդ թողուլ քո պարտէզ, ուր հանգչած ես խաղաղիկ, ասպարէզ թողուլ իրբ տղայոց զբօսանաց, ուր լռած է քո քնար, և ջախջախուած դրուած է գերեզմանիդ ի նշար. Ի՞նչ ցաւ պիտի զգաս արդեօք երբ միանգամ յառնես գերեզմանէդ և շուրջ յածես աչերդ, տեսնես թէ չ՛ունիս քո գլխուն վերեւ այն ծառոց հովանին, որ սփոփանք մ՛է գոգցես քեզ, քե՛զ, որ հովանւոյն տակ մերթ մտազբաղ, մերթ տխուր, մերթ զուարթ կը վերծանէիր, կը գրէիր. հոն չ՛պիտի տեսնես այն ուռենին որ կը հակի շիրմին վրայ և հովանի կը գործէ ։ Կը հարցանես.

«Ա՛հ, ուզածներս, Վա՛րդան, կա՞ն հոդ »։

Ի՞նչ էր քո ուզածն. ծառի մը շուք. ա՛հ, աշխարհի մէջ կը զլացուի քեզ այդ ծառի շուքը դնել քո շիրմին՝ մահուան ստուերին քով. ծառի մը շուք դնել կը խնդրէ՛ բանաստեղծն ։ Բայց հարցուր, ո՛վ Դուրեան, հարցո՛ւր Վարդանայ թէ ինք քարի մը շուք իսկ ունի՞ իւր վերեւ. ամպե-

րուն շուքովն պէտք է բաւականանալ, գէթ Երկինք կամի ընծայել այդ սփոփանք, այդ բաղձանք։

Ո՛հ, ՚ի վերայ մեռելոց՝ ծաղկան ինչ ոչ յառնէ վըթիթ,
Թէ մարդկան չիցէ գովիւք և արտասուօք իւրոյ պատուեալ։

ՏԱՂՔ ԳԵՐԵԶՄԱՆԱԿԱՆԱՑ
Թարգ. Հ. Ա. Կ. Բ.

Այդքան ընդարմացած են մեր զգացումներն։ Դու, ո՛վ յիշատակելի ոգի, որ քո հանճարովդ կեանք կուտայիր մեռեալ զգացմանց, կրակ կուտայիր մարած եռանդեան, անգոյն գաղափարաց թռիչ ու փայլ կուտայիր, արդ թափ չէ՞ կարող տալ քո լոկ յիշատակն այն մարած բարեպաշտութեան, որ տիրապետէ ի մեզ, թունդ չէ՞ կարող տալ քո այն շիրիմն, այն տաղեր, որոց ի լուր անհնար է չ՚փղձկիլ, չ՚յուզուիլ.

Իսկ աննշան եթէ մնայ
Երկրի մէկ խորշն հողակոյտն իմ
Եւ յիշատակս ալ թառամի
Ա՛հ, այն ատեն ես կը մեռնիմ։

ՏԱՂՔ Պ. ԴՈՒՐԵԱՆ

Արդարեւ Նորա յիշատակը չ՚է մոռացուած, Նորա շիրիմը չ՚է աննշան, այլ առ ի՞նչ են պիտանի այդ ամէն, քանի որ իւր գերեզմանը չ՚է պահպանուած այնպէս, որպէս վայել է քրիստոնեայ ազգի մը պահպանել։

Նա բողոքանաց ձայներ կը թռցունէ իւր

չիրմէն, այդ ձայներ կը խառնուին միմեանց և կուգան բաղխել մեզ դէմ. սուր սլաքներու պէս կարծես կը խրին մեր կուրծքերն, կը բաղխեն, այո՛, այն ուժգնութեամբ, որպէս հողմն ուժգին կուգայ կը զարնէ, կը կործանէ պարիսպ մի հաստահեղոյս:

Ծածկուէ հող, գոցուէ ո՛վ գերեզման, և թոյլ տուր մեզ վայրիկ մի խորհիլ առանձինն թէ ի՞նչ է դորա կեանքն:

Աղքատիկ թաղի մը մէջ ծնած, աղքատիկ տնակի մը մէջ ապրող. 'ի մեռանելն հարուստէ մը աւելի յարգանք վայելող, այլ իւր կենաց մէջ աղքատիկ մեռնող երիտասարդ մ'է Պետրոս Դուրեան: Իւր հանճարն անհեղասասատ կոհակ մի կը դառնայ մերթ, մերթ քաղցրաբոյր ծաղիկ մի, մերթ դայլայլող սոխակ մի, մերթ մելամաղձութիւն բոլորովին, մերթ հրդեհ մի երեւակայութեան, մերթ ծով մի միապաղաղ. կը կրթէ ժողովուրդն ժողովրդային դպրոցի մը մէջ, կրակ կուտայ այն սրտերուն, ոյց մէջ մարած է ազգային և ընկերական հուրն, զարկ կուտայ այն բազկաց, որ թոյլ ու տկար են. գրական հրապարակի վրայ կ'ելնէ, կը տողէ հեղինակութիւններ, կը տաղէ քերթուածներ, կ'երգէ ու կ'եղերերգէ և կը կոչուի ՔԵՐԹՈՂ. այլ այդ անուն՝ այդ անուան տակ ծածկուած սիրտն կը քերթէ, կը հիւծէ և կը տանի, կը գլորէ այն փոսն, զոր քիչ մը յառաջ տեսանք: Ահա՛ այսպէս է Ազգ. ուսումնական ճիւղին աշխատողին վախճան. ազգային նահատակներ....:

Ցառաչանամք դէպ 'ի վեր, այն չիրմին քովէն, ոյր վրայ կարդացինք ՍԱՐԳԻՍ ՊԱՏՐԻԱՐՔ ։

Ձեզ կըսեմ, դժբաղդութեանց դէմ մարտընչող, բարեգործութեան մատչող ոգիներ, ո՞ւր է այն հողն, զոր կը ճնշեմ ոտքիս տակ․ այն հողն, որ երբեմն թրջած էր սիրելեաց արտասուօք, ա՜հ, վարժապետի մը գերեզմանն է, խանդակաթ էակի մը մարմինն, և երբ կ'անցնիմ սոյն հողակոյտին վրայէն և կ'իմանամ թէ գերեզման մ'է այն․ կ'զգամ թէ ոճիր մ'է զոր կը կատարեմ, և արդէն կ'իմանամ սարսուռ մի ու սարսափ, որ կը խլրտի ոսկերացս մէջ և կը դառնամ առ անձն իմ և կ'ըսեմ․ «Մեղապարտ մ'եմ ես ։»

Ա՜հ, քար մի, քարի կտոր մ'իսկ չկայ, ծառ մի, դալարիք մի, խոտի շիւղ մ'իսկ չ'կարեմք տեսնել անոր վրայ ։ Գերեզմանին եզերքն եմք ։ Սա ծերունազարդ վարժապետ մ'է, որ 44 տարիներ շարունակ վարժապետութեամբ անցնելով պատրաստած է ուսեալ և բարեբարոյ երիտասարդներ․ այդ պատանիներ՝ աշակերտքն անշուշտ գոհ չ'պիտի լինին, երբ տեսնեն կամ լսեն թէ ո՛չ թէ միայն պահպանուած չէ նորա գերեզմանն, այլ և վէմ մ'իսկ չէ կանգնուած 'ի յիշատակ յոգնավաստակ և արդիւնաւոր վարժապետին ։ Ի՞նչ է վարժապետ մի ։

Երբ տգիտութիւնն իւր սեւ թեւերը կը տարածէր 'ի Հայս, երբ բազմաթիւ ընտանիք զո՜հ կ'երթային նորա ազդեցութեան, տուներ տեղեր կը քանդուէին, ծեր ու կայտառ աչքեր

արտօսր կը թափէին, երբ միտքն կաշկանդուած՝ կը գործէր առանց խորհելու, կը խօսէր առանց գիտնալու, կը դատէր առանց դիտելու, երբ վերջապէս աւեր ամայի էր ամէն ինչ և մոխրակոյտ ու փայտակոյտ միմեանց քով կը բարձրանային, այդ մոխրոց, այդ ժամանակի փոշւոց տակ կը պլպլար դեռ ոգի մի անկէզ իբր զՄանկունս 'ի հնոցին, այդ ոգին իւր ջախջախ քնար իւր աջն ու լանջն նետած կ'եղերերգէր ու կ'ուսուցանէր, կ'սթափեցնէր և կը մխիթարէր զհայն, կը ճողոպրէր տգէտ մանուկն անգիտութեան փոսին մէջէն և կը պատրաստէր նոր սերունդ մի զերծ վշտերէ, աղէտներէ, և անձին ու երկրին, ընչիցն ու պատուոյն վնասակար արկածներէ, այդ ոգին, այդ բարերար ոգին, որ ձեռքերն պէտք է համբուրել եռանդագին, կը հալի, կը մաշի, կը դադրի 'ի կենաց Ազգին ծառայութեամբն, այդ ոգին վարժապետն է, և այս դերեզմանին մէջ հանգչողն ալ վարժապետ մ'է, բազմավաստակ և ծերունազարդ Աւետիս էֆէնտի Տէր Սահակեան. ո՞վ չ'ճանաչեր զնա, ո՞վ անոր առաջն կեցած դաս առած չէ, ո՞ւր, ո՞ր տուն, ո՞ր քաղաք ծաղկեալ՝ չէ կարելի գտնել նորա աշակերտներէն. աւա՜ղ, իւր գերեզմանն սուղ ինչ ապա անծանօթ պիտի լինի, և հարթ հաւասար պիտի դառնայ հողոյն և մեք 'ի զուր պիտի փնտռեմք զայն և ցաւօք կ'ըսեմ թէ պիտի նմանեցնեմք ճիշդ (թէեւ կարի ցաւալի նմանութիւն) Դաւիթի բանիցն. «Անցի և ահա ոչ էր ; խնդրեցի զտեղի նորա և ոչ

դար»։ Ա՛հ, քստմնելի խոստովանութիւն. և մեք պիտի երթամք մեր նախնեաց քով, և մեք պիտի իջնեմք 'ի գերեզման։ Մեր Հանճարներն գոնէ չ'եմք յարգեր իրենց մահուան չիրմին մէջ իսկ, որպէս վայել է. այսմ վկայ՝ հանգուցեալ Համբարձում Էֆէնտի Իփէքճեանի գերեզմանն։

Որդեգորով և խոհեմազարդ Տուլլոններ կը պակսին և պարտաճանաչ ու առաքինի Նումաներ չե՛ն ծաղկիր 'ի մեզ, զի մարմնոյն մասունքն ամփոփեն և պահպանեն զգուշութեամբ։

Բայց ինչո՞ւ մի մի թուել. ըսէ՛ք, կը յարգե՞մք ըստ արժանւոյն մեր վարժապետներն, կը վարձատրե՞մք իրենց քրտնաջան և ոգի 'ի բուին տուած ծառայութիւններն. չէ՞ք տեսած երբէք վարժապետներ, իրենց չունչն սպառող, կեանքերնին մաշեցնող վարժապետներ, որ կը մտածեն թէ ի՞նչ պիտի ուտեն երեկոյին, և ոյց կուրծքն կը կոծէ անօթութիւնն անխնայ, որ կ'երթան կ'աղերսեն առ որ անկ է. և երբ իրենց ամիսներով առկախուած թոշակներէն մի փոքր մաս կը խնդրեն, կը մերժուի՛ն. չէ՞ք լսած նաև թէ վարժապետներ՝ նշանաւոր իրենց տաղանդովն ու ծառայութեամբ, լքեա՛լ թողուած են անկիւն մի, յաճախ անխնամ։ Եթէ չ'կարեմք մեր Հեղինակներն իրենց կենդանութեանն յարգել, յարգեմք գէթ զայնս իրենց անկենդանութեանն, որպէս ըրին Իտալացիք Թասսօյի։

Մեր Ննջեցեալք շատ գոհ և ուրախ պիտի լինին անշուշտ, եթէ իրենց չիրիմ չինելէ յառաջ չինեմք իրենց գերեզմանին չրջապատ որ-

մերն, որ կ՚ապահովեն իրենց շիրմին պահպանութիւնն ։

---

ԱՆՀԱՏԱԿԱՆ . — Այս կարգին կը վերաբերի ամէն կարգէ՝ հարուստ թէ աղքատ ժողովուրդըն, որոյ նշանաւորներէն են հետեւեալք .

Մէրեէմ-Գուլի, Վէմեան, Խայեան, Քէհեաեան, Բիշմիշեան, Նորատունկեան, Եազմաճեան, Ազնաւորեան, Ներսէսեան, Ս. Մանուկեան, Պալեան, Գոռանեան, Տէվլէթեան, Քիւրքճեան, Գրասէրեան, Քէօմիւրճեան, Պառնասեան, Մարգարեան, Հաճեան, Տէօքմէճեան, Պարտիզպանեան, Շէյխեան, Սեղբոսեան եւ որք թողած են արժանաւոր ժառանգներ և որք կը սիրեն անշուշտ պահպանել սոցա գերեզմանն ։ Ո՛վ ժառանգք ննջեցելոց, եթէ ձեր մայրեր ծնան զձեզ ուրիշ բանի համար չէր բայց միայն ապրելու իբր մարդ և պաշտպանելու զիրենք . եթէ պաշտպանեցիք զիրենք իրենց կենդանութեան, այսու դադրած չ՚լինիր ձեր պարտականութիւն, պարտիք պաշտպանել և իւրեանց գերեզմանն . իսկ դուք, ո՛վ երիտասարդք, ձեր մարդն, որ շատ կանուխ են ննջած, չ՚էք կատարած ձեր պարտքն ի կենդանութեան նոցին, ուստի կրկին է ձեր պարտականութիւն, մին՝ իւրեանց կենդանութեանն, միւսն՝ իւրեանց գերեզմանին . ուրեմն այդ կրկին պարտականութիւններն միացուցէ՛ք և հատուցէ՛ք իւրեանց գերեզմանին ։

Միայնակ մնացիք դուք, ո՛վ բնակիչք գերեզմանի, ձեր որդիք, ձեր հարսունք, ձեր թո-

ունք համայն թողուցին զձեզ և գնացին ի բաց. մոռացան զձեզ և արհամարհ լքին զձեզ, զձեզ, որ ուսուցիք նոցա մայրենի սէր և որդիական սէր. բայց նոքա պատառեցին այդ սիրոյ գրքերն ու թերթեր և արկին ի հուր, փախան ձեր գերեզմանի ստուերէն, որպէս փախեան Յիսուսի քովէն Աշակերտքն: Պէտք չէ մեզ, պիտի ըսէք անշուշտ, պէտք չէ մեզ մնալ նոցա գերեզմանին մօտ, պէտք չէ մեզ սրբել նոցա աչերն, որ փակուած են ի սպառ, պէտք չէ մեզ մխիթարել զնոսա, զի տեղի տուած են ի նոցանէ վիշտք և ցաւք: — Լաւ, բայց չէ՞ պէտք կատարել որդիական պարտիք յետ մահու, չէ՞ պէտք խաղաղիկ թողուլ իւրեանց այդ հողակերտ ննջարանն, չէ՞ պէտք յարգել իրենց այդ յաւիտենական կայան, չէ՞ պէտք սրբել, պահպանել այդ գերեզմաններ. այո՛, պէտք են այդոքիկ, թափեցէք ձեր ջանքեր, ժամանակն եհաս ահա՛, դարձէք դէպ ի այդ գերեզմանատուն, ուր ննջեցեալք կարծես բանալով իւրեանց աչեր՝ ողորմագին ի ձեզ հային և ձեր անփութութեան և պարտազանցութեան ներողամիտ ակնարկ մի նետեն. ելէ՛ք այդ արհամարհելի անտարբերութեան հովտէն, ուր մնացիք շատ ու շատ, ելէ՛ք և գնացէ՛ք շինել. զի՞նչ, այն գերեզմանատուն, ուր քարերն անկած են, ուր չիրիմք կործանած, ուր որմեր քայքայած:

Մի՛ թողուք ըսել նոցա. «Մեր արիւնն, մեր զաւակներն են դոքա, մեծցուցինք զանոնք նոցա պաշտպանութիւնը վայելելու, հասուցինք զա-

ոնք փառաց ի փառս. արդ նորա մեր շիրմին փառքը, շուքը կը նսեմացնեն, չմոռացանք մեր պարտիքն, այլ նորա մոռացան իւրեանց պարտիքն։ Ա՜հ, ի՞նչ եղան, ո՞ւր գացին, Եղիշէ՛, քո փափկասուն տիկնայքն, Հայոց աշխարհի զաւակներն ո՞ւր. անցան գնացին նորա, աւա՜ղ. գերեզմանի վրայ հաց ու լաց թափող, շուք ու սուգ պահող կուսանք չմնացին։ Աշխարհ, փառքեր, ինչք ու զաւակք ունայն են, կայծակ, կրակ, բոցեր, կոծեր թափին ի մեզ. աւերեն թո՛ղ մեր այս գերեզմանն ալ. այրեն մեր ոսկերոտիք ալ, բա՛ւ, որքան անարգուեցանք. գերեզմանն արօտավա՛յր . . . . ա՛հ, հեթանոսութեան ժամանակներն իսկ սուրբ կը պահուէր գերեզմանն։ »

Բայց դո՛ւք, ո՛վ ննջեցեալք Հայոց, դուք ամէնքդ չթողիք արդեօք սիրոյ ժառանգներ, որ այսպէս այսքան դարեր չէք բերկրիր ձեր շիրմէն, զի

Որ սիրոյ չթողու ժառանգ՝ նա եւ եթ ոչ բերկրի
շիրմէն,
Եւ ըղձնի յուղարկելոյն՝ թէ հայեցի յակն անկանի,
Ոգին իւր մոլորեալ յԱխերոնեան կայենից կոծ,
Կամ ի մեծ թեւս ապաստան ներողութեանն աստ-
ուածայնոյ.
Իսկ ըզփոշին ընկենու յեղինս հողոյն ամայութեան,
Ուր ոչ կին սիրայորդոր գըթովք աղօթըս մատուցանէ.
Ոչ անցորդ ճանապարհի միայնընթաց լըւիցէ բնաւ,
Զհեծութիւն զոր առաքէ ի դամբանէն առ մեզ բնու-
թիւն։

ՏԱՂՔ ԳԵՐԵԶՄԱՆԱԿԱՆԱՑ.
Թարգ. Հ. Ա. Կ. Բ.

Ձեզ թողած ժառանգ. ժամանակին իւր լռութեան մէջէն կը խօսի մեզ թէ առ ի՞նչ կը հարցընեմք, եթէ չեն իսկ թողած երբէք, ամբողջ Հայութիւնն նոցա ժառանգն է. ուրեմն մեք ամէնքս նոյա ժառանգներն եմք, պէտք է բերկրին նոքա երբ մեք կ'ապրիմք:

## Ե.

Գիշեր մի, երբ լուսինն կը խնայէ իւր լոյսն մթան, և աշխարհ կը թաղուի 'ի խոր խաւար, անցնիմք յուշիկ այն մահաշշուկ և միանգամայն այն անշշուկ գերեզմանատան եզերքէն, դարձընեմք աչքերնիս այն ձիւնաթորմի կանգուն քարերուն, յանկարծ պիտի սարսռիմք, միտքերնիս պիտի գրաւուի անցեալովն, այն ժամուն տեղի պիտի տան հրճուանք և պիտի արշաւեն 'ի մեզ մեռելական տխրութիւնք. մեր մայրերն, մեր եղբայրներն, մեր քոյրերն մեզ յանդիման պիտի լինին և տխուր ու խռպոտ ձայնիւ կարծես թէ պիտի գոչեն մեզ. «Ազատեցէք զմեզ այս անարգական վիճակէն»: Եւ մեք պիտի յուզուիմք յոյժ:

Մի քանի տարիներ յառաջ, եթէ չեմ սխալիր 1880ին, Երջանկայիշատակ Տ. Տ. Ներսէս Մ. Պատրիարք Հայրն մի կոնդակաւ, որ կարդացուեցաւ յեկեղեցւոջ, արգիլեց Մ. Զատկի և Նմանօրինակ Տաղաւարի օրերուն գերեզմանատունն զուարճութեան հանդիսատեղի ընելէ. այս թուականէն սկսաւ գրեթէ բորբոքիլ այն

բարեպաշտական զգացումն թէ պէտք է պարսպել գերեզմանատունն։ Պարսպե՛նք, գոչեցին ամէն կողմէ, և «Պարսպենք» ձայնին արձագանգն շուտով տարածուեցաւ Իւսկիւտարի Հայ հասարակութեան ամէն խաւերուն մէջ և զրոյցն մրմռուեցաւ այնպէս, որպէս կը մղուի ալիքն՝ մրրկակոծ ծովու մը մէջ։

Մեր նախանձն և միանգամայն բարեպաշտական զգացումն յուզեցաւ երբ կարդացինք 'ի լրագիրս թէ հեռաւոր և ոչ առաւել ճոխ երկրի մը մէջ իրենց գերեզմանատունն կը շրջապատեն և կը գեղազարդեն ծառերով ու ծաղիկներով. թող այսմ վկայ լինի Երզնկա իւր գերեզմանատունովն, Զմիւռնիա իւր գերեզմանատունովն, Նիկոմիդիա իւր գերեզմանատունովն։ Արե-Եւ ծանոյց նաեւ Զմիւռնիոյ նշանաւոր բարերարին՝ Սպարթալեանի 150 ոսկւոյ նուէրն և մեծ ու փառաւոր երկաթի դրան պարգեւն, զորս նուիրած էր իւր հայրենի երկրին՝ Սպարթայի Հայոց գերեզմանատան համար։ (1)

Այո՛, չէ՛ մարած բարեպաշտական զգացումն Իւսկիւտարի Հայոց բնակչաց մէջ, քանի՛ քանի՛ նշանաւոր և միանգամայն բարեպաշտ բարերարներ կան և հոն, որոց ազնիւ սիրտն ու ոգին ծանօթ են հանուրց. Եսայեան պատուական գերդաստանէն զոյգ եղբարք արդէն յանձնառու եղած են գերեզմանատան վանդակապատին համար պէտք եղած երկաթները տալ. օրհնե՛լ

(1) Զրոյց կայ թէ Ազնաւուրեան Յովհաննէս էֆէնտի Գերեզմանատան երկաթի մի պատուական դուռ պիտի նուիրէ. սա ապացոյց մ'է թէ Իւսկիւտար եւս ունի վեհանձն ու բարեպաշտ ոգիներ։

անունդ , օրհնեա՛ Գերդաստանդ : Երբ նման ոգի ու սիրտ կրող անձինք յաւնեն և գործեն այսօր խիստ շատ խիստ կանուխ փառաւոր գերեզմանատուն մի պիտի ունենամք և մեր ոգիք ննջեցելոց իրենց երանութեան մէջէն պիտի գոչեն . « Մեր որդիքն են դոքա , չե՛ն մոռանար յաւէտ իրենց հայրերն . իրենց երախտագիտութեան փորձն է այն գործն . ա՜հ , ներէ դոցա , ո՜վ Աստուած , զի դոցա արտասուք տեսաք , տեսաք զի կ'արտասուեն՝ մեր գերեզմանին վերայ , իրենց անտարբերութեան վերայ , տեսաք զի և կը գործեն իրենց արտասուաց հետ ի միասին » :

Գործեմք որպէս զի պարսպեմք գերեզմանատունն , գործեմք՝ զի ջնջեմք մեր վրայէն այն «աւա՛ղ» զոր լսելու կամ զգալու դժբաղդութիւնն ունեցանք :

Յուզումն՝ որ կ'ընթանայր Իւսկիւտարի մէջ , կազմեց մի Մասնախումբ գերեզմանատան որմերու շինութեան՝ Ս. Կարապետ եկեղեցւոյ քաջարթուն Հովիւ՝ Գեր. Տ. Մատթէոս Ս. Եպիսկոպոսի Նախագահութեամբ , որ քրտնաջան ու տաժանելի աշխատութեամբ կարգադրեց զայն կնճիռ , որ խնդիր եղած էր շատ տարիներէ ի վեր և որ պատճառ լինելոց էր հայ գերեզմանատան փճացման և անարգութեան :

Լրագիրք հրատարակեցին այն ընդարձակ և մանրակրկիտ քննութեամբ կատարուած աշխատութիւնն , տեղեկագիրն որ եղած է այս մեղուաջան Մասնախմբի ձեռօք , մանաւանդ Սրբազան Նախագահի ջանիւք:

Պիտի զարմանանք յանչափս․ և պիտի ուրախանանք յանչափս երբ տեսնէք թէ այն բազմադիմի խռովութեանց տեղի տուող այն կնճիռն՝ ընդ մէջ դըրացի Յոյն և Հրեայ հասարակութեան, բարձուած է այժմ, որով մեծ դիւրութեամբ կարելի եղաւ Հայ գերեզմանատան սահմանները գծելու․ պարսպելու և պատսպարելու զայն ամեն պժգալի տեսարաններէ․ այլ ևս պատճառ չ'կայ անտարբեր մնալոյ, գործեմք։

Կրօնի և Ազգի սէրն, ընտանեկան և ընկերական սէրն, հանրական և անհատական սէրն, պարտականութեան հարկն և ազգային շահը կը միանան հոս և կը պահանջեն ի մէնջ ԳՈՐԾԵԼ։

Ի՞նչ ընեմք, պիտի հարցնէք անշուշտ, շինեցէ՛ք ձեր գերեզմանատունն 5 ղուրուշով․ 5 ղուրուշով ամբողջ և ընդարձակ գերեզմանատուն մի շինեցէ՛ք, շինեցէ՛ք զայն 5 ղրշ․ ով, որ հազարաւոր ոսկիներով շինել կարելի չէր եղած․ Հազարաւոր ոսկիներն ո՞ւր, 5 հատ ղուրուշն ո՞ւր, ա՜հ, ի՜նչ հրաշալի փոփոխութիւն, ի՜նչ սքանչելիք։

Յետ այսօրիկ ննջեցելոց տէարք թո՛ղ մտածեն այդ հինգ ղուրուշը տալու հարկը՝ ոսկիներ շռայլելէ յառաջ իրենց ննջեցելոց գերեզմանաքարին, թո՛ղ մտածեն թէ այդ պարտաճանաչութիւն անօգուտ է և անընդունելի առանց միւսին։

Ցնորք չ'է բնաւ, սոսկ իրողութիւն մ'է, զոր յղացած է յոգնաջան Մասնախումբն 5 էն մինչեւ 20 և աւելի գնով տոմսակներ հանելով ի հրապարակ։

Այդ տոմսակներ շինուած են գերեզմանա-

տան չինութեան համար․ գերեզմանատան, ուր ամփոփուած են քու սիրելիքն, քու մայրն, որ ծնած է զքեզ և մարդկութեան նշանաւոր կամ բարի անդամ մի պատրաստած է, այժմ չ՚պիտի խորհիս նորա գերեզմանն․ քու մայրն, որ տառապած է և վաստնած իւր ինչքն զքեզ ամէն վտանգներէ պահպանելու համար, և դու չ՚պիտի ուզես նորա գերեզմանն անարգանաց վտանգէն պահպանելու․ քու մայրն, որ դիեցուցած է իւր դիրկն իւր իւրեան չքնաղ յիշատակն, և դու չ՚պիտի ուզես նորա դրկին վրայ դնել քու որդիական պարտականութեան յիշատակն․ քու մայրն, որ առատապարգեւ տուաւ քու դաստիարակութեան համար, և դու չ՚պիտի ուզես 5 ղրշ· տալ նորա գերեզմանին համար․ պիտի պատասխանես, գիտեմ, որդիական զգացումէ մղեալ․ «իմ ննջեցելոցս ՚ի յիշատակ կուտամ որչափ կարեմ․ այդ իմ անխուսափելի պարտքս է․ պիտի ջնջեմ այնու իմ ճակտիս վրայ տարիներէ ՚ի վեր քանդակուած նախատինքն, պիտի լուացնեմ տարիներէ ՚ի վեր իմ դէմ ժայթքած մօրս բողոքն, որ սրտերու ամենանուրբ ծալքերն իսկ կ՚իջնէ․ և երբ տեսնեմ այն ոսկերն փառաւոր, ահա յայնժամ իմ պարտքս կատարուած պիտի տեսնեմ, ահա իմ փափաքս լրացած պիտի տեսնեմ, ահա իմ սիրտս հանդարտած պիտի տեսնեմ, ահա իմ փառքս կատարեալ պիտի տեսնեմ, այն փառքն, զոր առած էի արդէն այդ հողոյն տակ հանգչող մօրս խնամոց տակ:»

Եւ երբ այսպէս խորհէին, այսպէս զգան ա-

մէն միտքեր, ամէն սրտեր, յայնժամ այն 5 ղրու-
րուշն խիստ գձուձ գումար մի պիտի թուի աչաց
և ամէն ոք պիտի տայ սիրայօժար՝ իւր մօր, հօր,
քեռ, եղբօր, կնոջ, ազգականին ու բարեկա-
մին համար, Ազգին համար, մարդկութեան
համար: Բարերար ճանչցուելու համար պէտք է
բարերարել, երախտաւոր ճանչցուելու համար
պէտք է երախտագէտ լինել, ուստի ձեր որդ-
ւոցմէ եթէ կ'ուզէք երախտաւոր, բարերար
ճանչցուիլ, կատարեցէք ձեր պարտքն ձեր
հարց, Հայոց զաւակներ:

Արդէն երկաթագործայ Եւնաֆըն փափաք
յայտնած է ձրիաբար աշխատիլ ի սէր այն սուրբ
տեղւոյն, որ հանգչին իւրեանց ննջեցեալք:

Ոչինչ նուազ յիշատակելի և շնորհակալու-
թեան արժանի է ճարտարապետ Մելիտոսեան
Էֆէնտիի ջանքերն, որ կուտայ անձնուիրաբար
գերեզմանատան շինութեան մասին:

Ներելի է մեզ յուսալ նաեւ թէ գտնուի
յիսկիւտար առատաձեռն և բարեսէր մի ոգի
նուիրելու համար Գերեզմանատան մէջ տնկուե-
լի ծառերն, որպէս ըրած է Կարապետ Պէյ Ե-
րամեան Բերա Շիշլիի գերեզմանատան համար,
ծառեր, զոր բերել տուած էր իւր պարտէզէն,
և զոր կարդացինք Արե–Եւքի մէջ:

Շինեմք մեր գերեզմանատունը, ուր հանգ-
չած են մեր կեանքն, Հայութեան կեանքն,
Հայութեան փառքն, Պատրիարքներն, Վարդա-
պետներն ու Վարժապետներն՝ նահատակներն
ու 'ի մեզ գուրգուրացող ոգին՝ Մայրն...:

ՎԵՐՋ

